

## ԾԱԾԿԱՄԻՏ ՁԵԿՈՒՅՑՆԵՐ

Լիցքային վարժություններից հետո հնչեց շեփորի զիլ ձայնը։ Պիոներները հավաքվեցին դրոշը բարձրացնելու։

— Իսկ ի՞նչ եք անելու այսօր,— դիմելով ջոկխորհրդի նախագահներին, հետաքրքրվեց ավագ ջոկատավարը։

— Այդ ջոկատի ներքին գաղտնիքն է,— կարմրելով պատասխանեց Վանյան,— այդ մասին երեկոյան կիմանան բոլորը։

Պարզվեց, որ բոլոր ջոկատներն ունեն իրենց ներքին գաղտնիքները, որ չեն ցանկանում նախօրոք հրապարակել։

Այդ գաղտնիքները գիտի միայն օրվա հերթապահը։ Ճանապարհելով բոլորին, նա հուշատետրում խնամքով նշումներ է անում։

## ԾԱՂԿԵՊՍԱ՞Կ, ԹԵ՞ ՀԱՆԴԻՄԱՆՈՒԹՅՈՒՆ

Հերթապահ ջոկատի սանիտարական հսկիչ պոստը անցնում է գործի։ Նրանք շրջում են ննջարանները, ստուգում՝ արդյոք ամեն ինչ կարգի՞ն է այնտեղ, թե՞ ոչ։

Այս անգամ նրանք չեն կրկնում նախկին սխալը։ Սանիտարներն ուշի-ուշով ստուգում են յուրաքանչյուր պիոների անկողինը, պահարանները և ապա առավել լավ հարդարված անկողինների վրա դնում են գեղեցիկ ծաղկեպսակ։ Իսկ ում անկողինը

# Ճամբարային



թափթփված է, անկարգ, գրում են անունն ազգանունը և երեկոյան տողանի ժամանակ հայտնում այդ մասին։ Իսկ դա, իհարկե, պատիվ չի բերում ամբողջ ջոկատին։

Սանիտարական շրջագայությունը ավարտված է, նրանք դուրս են գալիս վերջին կորպուսից և, մոտենալով ճամբարի պետին, ուրախ զեկուցում են։

— Ամեն ինչ երեկվանից ավելի լավ է։

## ԱՆՏԱՌԱՅԻՆ ՀԵՔԻԱԹ

Երրորդ ջոկատի մի խումբ պիոներներ վերադարձան անտառից և հոկտեմբերիկներին ասացին.

— Կուզե՞ք անտառ գնալ։

— Գնա՛նք, գնա՛նք,— բացականչեցին բոլորը։

Հոկտեմբերիկները երգելով մտան անտառ և խորացան ստվերախիտ ծառերի ու թփերի մեջ։



ՕԳՈՍՏՈՍ
№ 8 1961 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
33-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Երեխաների երգը հանկարծ դադարեց։ Նրանց դեմ ելավ Կարմիր գլխարկը՝ զամբյուղը ձեռքին։

— Բարև՛ ձեզ, երեխանե՛ր։

— Բարև՛ ձեզ, Կարմի՛ր գլխարկ,— զարմացած պատասխանեցին հոկտեմբերիկները։

— Իսկ և՛ իսկ Կարմի՛ր գլխարկը,— շշնջացին երեխաները։

— Ես շտապում եմ տատիկիս մոտ, գնա՞նք միասին։

— Գնա՛նք,— ուրախությամբ համաձայնվեցին բոլորը։

— Ես տատիկիս կարկանդակ եմ տանում, իսկ դուք էլ ծաղիկներ հավաքեցեք նրա համար։

Եվ ծաղիկներ հավաքելով՝ նրանք ավելի խորացան անտառում։

— Այս ու՞ր եք գնում,— թփերի տակից լսվեց մի խռպոտ, հաստ ձայն։

— Քեզանից չեմ վախենում, ապերա՛խտ գայլ,— համարձակ պատասխանեց Կարմիր գլխարկը,— տե՛ս, ինչքա՜ն շատ ընկերներ ունեմ։

— Թողեք ես էլ գամ,— խնդրեց գայլը։

— Ո՛չ, մենք քեզ չենք սիրում,— բարկացան հոկտեմբերիկները,— դու շատ վատն ես։

Գայլը ահաբեկված փախավ և աներևութացավ անտառում։

Հոկտեմբերիկները շարունակեցին իրենց ճանապարհը։

Անտառում Կարմիր գլխարկը երեխաներին ծանոթացրեց արջի քոթոթների, նապաստակների և խորամանկ աղվեսի հետ։

Նրանք բոլորն էլ սիրով ճանապարհ էին տալիս փոքրիկներին։

Հաճելի զբոսանքից հետո, վառ տպավորություններով, երեխաները վերադարձան ճամբար։ Նրանք անտառի եզրին հանկարծ տեսան պապիկին ու տատիկին, որոնք չարչարվում էին մեծ շաղգամը հանելու համար։

— Եկե՛ք մեզ օգնության, թոռնիկնե՛րս,— ձայն տըվեց պապիկը։

Երեխաները գնացին, բռնեցին իրար «Պապն ու շաղգամը» երգելով, հանեցին հսկա շաղգամը։

## ԾԱՂԿԱՁՈՐԻ ԾԱՂԻԿՆԵՐԸ

Քանի՞ տեսակ և ի՞նչ գույնի ծաղիկներ կան Ծաղկաձորում։ Այս միտքն էր զբաղեցնում 3-րդ ջոկատի 1-ին օղակին։

Մտահղացումը լավ էր և խրախուսելի։

Այդ նպատակով, օղակի պիոներները, նախօրոք խորհրդակցելով ճամբարի պետի հետ, նշված երթուղով սկսեցին իրենց էքսկուրսիան։

Առաջին օրվա արդյունքը գոհացուցիչ էր. նրանք ճամբար բերեցին 25 տեսակ ծաղիկներ։ Դրանք բոլորն էլ խնամքով դասավորեցին ալբոմի մեջ։ Այդ նպատակով ջոկատը 5 օր դուրս եկավ արշավի։ Երեխաները շատ հետաքրքիր ու հարուստ ծաղիկների հավաքածու կազմեցին։ Ծաղիկներից շատերի անունները անհայտ էին, և երեխաները որոշեցին գեղեցիկ անուններ տալ նրանց, ինչպես օրինակ՝ «Պիոներ», «Երջանիկ», «Բուրիկ», «Նազիկ», «Սիրունիկ», «Շեփոր», «Անուշիկ», և այլն։

Նրանց օգնում և խորհուրդներ էր տալիս բնագիտության ուսուցիչը։

## ԱՌԱՋԻՆ ՇՆՈՐՀԱԿԱԼՈՒԹՅՈՒՆԸ

Պիոներական 3-րդ ջոկատը կոլտնտեսության բանջարանոց եկավ։

— Ա՛յ, հազա՜ր բարով եք եկել,— ուրախությամբ դիմավորեցին նրանց։

— Եկել ենք օգնելու,— ասացին պիոներները։

Բրիգադիրը ցույց տվեց նրանց կարտոֆիլի դաշտը, լոբու մարգերը և հնձած խոտը։ Ջոկատավարը օղակներին հանձնարարություն տվեց։ Սկսվեց եռուն աշխատանքը։ Օղակներից մեկը հավաքում էր հնձած խոտը և դեզեր կազմում, մյուսը՝ բուկ էր տալիս կարտոֆիլին, իսկ երրորդը՝ մաքրում լոբու մարգերը մոլախոտերից։ Կոլտնտեսականները նրանց խորհուրդներ էին տալիս, սովորեցնում։ Աշ-



Նկ. ԼԱՎԻՆՅԱ ՄԵԼԻՔՅԱՆԻ

խատանքը ավարտելուց հետո բրիգադիրը ամուր սեղմեց ջոկատավարի ձեռքը և նրան հանձնեց կոլտնտեսության վարչության նախագահի շնորհակալական թերթիկը։

## ԳՏԵՔ ՄԵԶ

Օրվա հերթապահը մոտենում է ճամբարի պետին և զեկուցում.

— Ընկե՛ր Ղարագյոզյան, այս հայտարարությունը փակցված էր շտաբի դռանը։ Հայտարարության մեջ գրված է. «Մենք անտառում ենք, կայմից 100 մետր հեռու սկսվում են ճանապարհային նշանները։ Դրանցով ջոկատի հետախույզները կարող են գտնել մեզ։ Մենք սպասում ենք։

— Բայց չէ՞ որ քիչ առաջ նրանք այստեղ էին,— զարմանում է ճամբարի պետը։

— Դա նրանց նոր գաղտնիքն է,— պատասխանում է ջոկատավարը։

Հնչում է շեփորը. պիոներները հավաքվում են դրոշի շուրջը։

— Որոնումների համար տրվում է 45 րոպե։ Նշված ազդանշաններով գտեք քողարկված օղակը,— հրահանգում է ճամբարի պետը։

Սկսվում են որոնումները։ Հետախույզները խորանում են անտառի խորքը։ Թաքնված օղակի հետքերը մեկ տանում են աջ, մեկ՝ ձախ, մեկ զգուշացնում, որ առջևում վտանգ կա։

— Ժամանակը սպառված է, զգուշացնում է ավագ ջոկատավարը։

Ոչ ոք քողարկված օղակին չի կարողանում գտնել։

— Հավանաբար նրանք շատ հեռու են գնացել,— ասում է անհաջողությունից զայրացած հետախույզներից մեկը։

— Ճիշտ է,— համաձայնվում են շատերը։

— Որտե՞ղ եք, դո՛ւրս եկեք,— բարձրաձայն գոչում է ջոկատավարը։

Ճանապարհի թփերի միջից դուրս են գալիս պիոներները՝ տերևներով ու ծաղիկներով քողարկված։

— Ա՜յ քեզ զարմանք,— պչշում է Արամը,— ես այդ թփերի միջով եմ անցել։

— Դու իմ ոտքը տրորել ես,— ժպտում է Նինան։

Բոլորը գովաբանելով առաջին օղակի պիոներներին, նրանց շնորհում են «Հետախույզների օղակ» անունը։

## ՎԱՌՎԻ՛Ր, ԽԱՐՈՒՅԿ

5-րդ ջոկատի պիոներները բոլորին զարմացրեցին մեկ ուրիշ անակնկալով ևս։ Նրանք խարույկ պատրաստեցին անտառի խորքում գտնվող մի գեղեցիկ պուրակում, որ այժմ կոչվում է 5-րդ ջոկատի պուրակ։

Երբ մութն ընկավ, ձեռքի լապտերներով լուսավորելով ճամփան, ջոկատը շարք կազմած, ուրախ երգելով մտավ անտառ։ Արդեն հավաքվել էին հյուրերը։ Նրանք խարույկի շուրջը շրջան կազմելով՝ սկսեցին երգել «Խարույկով խարկվենք» հնագույն պիոներական երգը։ Նրա հնչյունների տակ հանդիսավորությամբ վառվեց խարույկը։

Ավագ ջոկատավար Լենա Դայանը պատմեց Սովետական Միության հերոս պիոներ Վալենտին Կոտիկի մասին։ Այնուհետև երեխաները երգեցին, պարեցին։ Հետաքրքիր ու բովանդակալից ժամանցից հետո վառ տպավորություններով պիոներները վերադարձան ճամբար։

## ԴԺՎԱՐ ԽՆԴԻՐ

Հասավ ցանկալի և հուզիչ պահը, դրոշի իջեցման

ժամը, երբ պետք է ի մի բերվեին շաբաթվա արդյունքները։*

Շինանյութերի արհմիութենական պիոներական ճամբարի ջոկխորհրդի նախագահները ոգևորված զեկուցեցին, թե ով ինչ է արել շաբաթվա ընթացքում։ Զեկուցումները մեկը մյուսից հարուստ և բովանդակալից էին։

«Ու՞մ տալ առաջնությունը»—այս հարցը մտահոգում էր դրուժինայի խորհրդին։

Հարուստ, բովանդակալից էր անցել ճամբարային այդ շաբաթը։

—Դրուժինայի խորհուրդը գոհ է բոլոր ջոկատներից,—հայտարարեց դրուժինայի խորհրդի նախագահ ընկեր Ռաֆիկը,—մրցությունը շարունակում ենք ևս 5 օր, որից հետո կամփոփենք արդյունքները և հանդիսավորությամբ կհանձնենք փոխանցիկ հուշադրոշները։

Ս. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

(Հայկական ՍՍՌ Վաստակավոր ուսուցիչ, Պիոներական պալատի ավագ մեթոդիստ)



# ԴԵՊԻ ԲՅՈՒՐԱԿԱՆ

ՀԵՆՐԻԿ ԹՈՒՄԱՆՅԱՆ

... Եղե՞լ եք արդյոք դուք Բյուրականում,
Ուր գեղաքանդակ շենքեր բարձրանում,
Ժպտում են զվարթ այդ սարալանջին.
Շուրջը անտառն է տալիս կանաչին,
Արևի լույսից շողում են պարթև
Կառուցվածքները այն գմբեթաձև,
Եվ մարդիկ բոլոր կոչում են նրան—
Համբարձումյանի աստղադիտարան։
Մեր գյուղից այնպես պարզ են երևում
Այդ գմբեթները։ Շատ մոտ են թվում։
Թվում է մի պահ՝ թե ձեռքդ մեկնես
Նրանց կհասնես։
Բայց ոչ։ Դեռ մինչև աստղադիտարան
Ձորեր կան, լեռներ, դաշտեր հուրհրան,
Աղբյուրներ վճիտ ու պաղ գետակներ։
Պատանեկական երազանքը մեր
Մեզ վեր է տանում՝ առած իր թևին,
Սարերի հովին։

Այդպես գնում ենք դեպի Բյուրական
Տեսնենք, իմանանք տիեզերական
Աստղահույլերի նոր կարգի մասին,
Մտքով սլանանք Վեներա, Լուսին։
Բայց մենք չենք գնում ճամփով ասֆալտե,

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Մենք տղաներ ենք վառվռուն, թեթև,
Գնում ենք գյուղի զովասուն ծորով,
Պաղպաջուն, վճիտ մեր տանձաղբյուրով։
Ճամփին տեսնում ենք վեհ Արագածի
Լանջերին բազմած՝ ինչպես մի արծիվ,
Բերդը կիսավեր այն հնադարյան,
Որի քարերին հետքերն են արյան
Դյուցազուններիի մեր քաջակորով,
Որոնք Վարդանից փոխ առած սրով
Պատիվն են պահել մայր հայրենիքի,
Օջախը անմար մեր սիրո, կյանքի։
Ապա անցնում ենք անտառ, թփուտներ,
Ժիր տղաների ուրախ խումբը մեր
Հասնում է, մտնում աստղադիտարան,
Ուր արեգակի շողը հուրհրան
Ճառագայթում է նոր ուժով ասես։
Այնտեղ գերում ու կլանում են մեզ,
Գործերն իմաստուն գիտնականների,
Որ հասկանում են լեզուն աստղերի,
Որոնք հեքիաթը կյանքի վերածել
Անհայտ աստղերի ուղին են բացել։

Եկե՛ք դուք մեզ հետ, գնա՛նք Բյուրական,
Տեսե՛ք, թե այնտեղ ինչ կա որքան։



# ՄԵ՛ՆՔ ԽԱՂԱԼ ԷԻՆՔ ՈՒԶՈՒՄ

ԿԱՐԵՆ Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

Նկ. ԱՐՄԻՆԵ ԳԱԼԵՆՑԻ



Մենք ավելի կծկվեցինք դողնած թփերի տակ:

Աշնանային այգու լռության մեջ լսվում էր միայն խճաքարերի խշշոցը: Նա դանդաղ քայլում ու որոնում էր մեզ: Իսկ մենք՝ ես ու Տիրանը, թաքնվել էինք, որովհետև գնալու էինք հարևան թաղի տղաների հետ թենիս խաղալու: Տիրանը դեռ երեկվանից խնդրում էր նրան: Բայց մեր դայակը իր ասածի էր: Նա միայն կրկնում էր, որ իրեն հանձնարարված է հետևել մեզ, որ մենք պարտավոր ենք ժամանակին հանգստանալ, ժամանակին զբաղվել դասերով և ժամանակին խաղալ: Մայրիկն էր պատվիրել: Բայց թե որ մայրիկը հիմա քաղաքում լիներ, մենք անպայման կհամոզեինք նրան: Ծայրահեղ դեպքում ես կտզտզայի, ու մայրիկն էլ մի քիչ բարկանալուց հետո՝ կժպտար... Ուրեմն, հարցն էլ կլուծվեր: Բայց հիմա...

— Տիրա՛ն, նա մեզ չի՞ գտնի,— հարցրեցի ես:

— Չի՛ գտնի: Եթե շատ չխոսես:

Խճաքարերի խշշոցը մոտիկից լսվեց: Ու ես շունչս պահեցի: Թփերի արանքից տեսա աշնանային արևի ճառագայթների տակ փայլող մեր դայակի մետաղյա իրանը: Ու հանկարծ գլխի ընկա, որ օգուտ չունի թաքնվելը: Միևնույն է, թաքստոցից դուրս գալ չենք կարողանա և թենիսի մրցությունն էլ կտապալվի:

Մեր դայակը անցավ-գնաց: Հետո նրա ոտնաձայները մարեցին: Ու ես հանգիստ շունչ քաշեցի:

— Գնաց:

— Չնկատեց:

— Ծլկե՛նք,— առաջարկեցի ես:— Այսպես նստելն ու սպասելն էլ մի բան չէ:

— Ես էլ եմ ձանձրանում,— ասաց Տիրանը:— Բայց մի քիչ էլ համբերենք:

— Ինչո՞ւ:

— Նա մոտակայքում կլինի:

— Ա՛յ, թե մայրիկը լիներ:

— Նա ուշ կգա: Երեկոյան,— ասաց Տիրանը:

Նորից լռեցինք:

Տխուր բան է, երբ դայակը սովորական մարդ չէ: Այլ՝ ռոբոտ: Առաջներում ուրիշ էր: Դայակները բարեհամբույր մորաքույրներն ու տատիկներն էին: Նրանք էլ են խիստ եղել: Բայց, այնուամենայնիվ, եղել են սովորական մարդիկ, որոնց կարելի էր բան հասկացնել, համոզել: Իսկ մեր ռոբոտ-դայակը... Անտանելի է: Ազնիվ խոսք:

— Տիրա՛ն,— շշնջացի ես:— Այդ դայակի գլխին մի խաղ չխաղա՞նք:

— Ի՞նչ,— չհասկացավ Տիրանը:

— Մի քիչ դաստիարակենք մեր դայակին,— բացատրեցի ես:

Տիրանը հեգնանքով ժպտաց:

— Չի՛ լինի: Նա ախր մեքենա է: Մարդ-մեքենա: Նրան ինչ հանձնարարություն տալիս են, այն էլ կատարում է:

— Գիտեմ: Ես էլ հենց այդ եմ ասում: Ավելի լավ, որ մեքենա է: Մի որևէ լար կկտրենք ու...

— Դուք այստե՞ղ եք: Իսկ ես ձեզ եմ որոնում,— ուղիղ մեր գլխավերից լսվեց դայակի ձայնը:— Դե, վե՛ր կացեք:

Սիրտս այնպես կծկվեց, որ թվաց, թե հիմա ուշագնաց կլինեմ: Այդ սատանան գտել էր մեզ:

— Չե՞ք լսում: Ձեզ հետ եմ,— կրկնեց դայակը:

Մենք ելանք թփերի միջից: Ես նույնիսկ չուզեցի

նայել նրա սառը, կանաչավուն, ապակե աչքերին:

Մի տեսակ, վախենում էի:

Երբ դուրս եկանք ծառուղի, Տիրանը աննկատելի նշան արեց, թե՝ ծլկենք:

Եվ նույն պահին սիրելի դայակը բռնեց մեր ձեռքը:

— Կորա՞նք,—ասաց Տիրանը:

— Տապալվեց մրցությունը,—ավելացրի ես:

Ու աշնանային այգին կորցրեց իր հմայքը: Ծառերը դադարեցին մեղմ սվսվալուց: Ես լսում էի միայն արդեն ծանոթ ու անտանելի դզզոցը, որը գալիս էր մեր դայակի մարմնում աշխատող մեխանիզմներից:

Երբ մոտեցել էինք տանը, ասացի.

— Ի՞նչ կլինի... Հետո կպարապենք: Տղաները մեզ են սպասում:

— Պետք է դասերը պատրաստենք,—ասաց դայակը:

— Երեկոյա՛ն, ազնի՛վ խոսք... երեկոյան զբոսնելու փոխարեն՝ կպարապենք:

— Ո՛չ,—պնդեց դայակը:

— Մայրիկը թույլ էր տալիս,—ես ուզում էի անպայման համոզել այդ ռոբոտին:

Բայց նա չպատասխանեց ու մեզ քարշ տվեց սենյակ: Ի՞նչ արած: Նստեցինք, բացեցինք տետրերն ու տխուր իրար նայեցինք:

— Սկսենք տիեզերագիտությունից,—ասաց դայակը:

— Սկսենք,—հոգոց հանեց Տիրանը:

Ես ծծանի վրա գրեցի. «Դու նրան զբաղեցրու, իսկ ես կդաստիարակեմ»: Հետո գրածս ցույց տվեցի Տիրանին: Նա գլխով արեց:

— Ինչո՞վ եք զբաղված,—հարցրեց դայակը և ճարպկորեն վերցնելով ծծանը, կիսաձայն կարդաց. «Դու նրան զբաղեցրու, իսկ ես կդաստիարակեմ»:— Սա ի՞նչ բան է:

— Նախադասություն,—ասացի ես:

— Ի՞նչ:

— Բարդ նախադասություն, որը բաղկացած է երկու պարզ նախադասությունից,—Տիրանը ինձ աչքով արեց և ես անցա մեր դայակի թիկունքը,—առաջին պարզ նախադասությունը. «Դու նրան զբաղեցրու...»

Ես համարձակորեն, մինչև Տիրանը բացատրում էր առաջին պարզ նախադասության կառուցվածքը, գործի անցա: Քանդում էի ռոբոտի մեջքին գտնվող կափարիչի պտուտակները: Չկարծեք, թե դա մեծ բան էր: Որքան էլ պտտադարձը ամուր սեղմեի, որքան էլ պտուտակները դժվարությամբ տեղի տային, միևնույն է, դայակը ոչինչ չէր զգա: Չէ՞ որ նա ոչ թե մարդ էր, այլ մետաղե մեքենա:

Ու երբ Տիրանը արդեն անցել էր երկրորդ նախադասությունը վերլուծելուն, ես բացեցի կափարիչը:

Այնտեղ, ներսում երևում էին էլեկտրոնային լամպերը, խճճված լարերը, ճենապակյա մեկուսիչները... Առանց երկար-բարակ մտածելու, ձգեցի կարմիր լարերից մեկն ու չըրթ... Լարը կտրվեց: Դայակը, իհարկե, այդ էլ չզգաց, և քանի որ Տիրանը արդեն վերջացրել էր բարդ նախադասության վերլուծությունը, նա միայն հարցրեց.



— Վաղվա համար ի՞նչ նք պատրաստելու:

— Սատուրնի աշխարհագրությունը:

— Պարզ է… Ուշադրությո՛ւն: Սատուրնը հիմնականում բաժանվում է Հյուսիսային և Հարավային կիսագնդերի: Հյուսիսային կիսագնդում գերիշխում են լեռնաշղթաները: Հարթավայրեր գրեթե չկան…

Մեր դայակի կանաչավուն աչքերի փայլը հանկարծ ուժեղացավ: Լսվեցին տարօրինակ ձայներ, խզզոցներ և ապա նորից.

— Սատուրնը հիմնականում բաժանվում է Հյուսիսային և Հարավային կիսագնդերի: Հյուսիսային կիսագնդում գերիշխում են լեռնաշղթաները: Հարթպվայրեր գրեթե չկան…

* * *

Արևը վաղուց մայր էր մտել: Արդեն ուշ գիշեր էր: Մենք դեռ նստած էինք գրասեղանի առաջ: Դայակը մոռացել էր, որ մեր զրուանքի ժամը վաղուց էր անցել, որ մենք պետք է ընթրեինք, որ մենք պետք է արդեն քնած լինեինք: Սիրելի դայակը, չգիտեմ քանի հազարերորդ անգամ կրկնում էր.

— Սատուրնը հիմնականում բաժանվում է Հյուսիսային և Հարավային կիսագնդերի: Հյուսիսային կիսագնդում գերիշխում են լեռնաշղթաները: Հարթավայրեր գրեթե չկան…

Իսկ մայրիկն էլ հակառակի պես ուշանում էր:



# ՊԱՏՆԵՇԸ

*ՀԱՄՈ ՀԱՐՅԱՆ*

1.

Քուլա-քուլա ամպը եկավ,
Լցվեց գարնան երկինքը ջինջ.
Լցվե՜ց, մթնե՜ց ու ծանրացավ
Եվ կախ ընկավ սպառնալից.
Արևն՝ ամպե քողը վրան՝
Սուզվեց կորավ թանձր մթնում,
Կորավ, ինչպես կաթիլն արյան՝
Ջրվեժի խոլ հորձանուտում:
Եվ համրացան բամբուկ ու սեզ
Դեղին գետի ափին կանաչ,
Ու լռություն իջավ նստեց
Հովտի վրա լայնատարած…

2.

Եվ շռինդով ջղագալար
Պատառոտվեց երկինքը մութ,
Սրսրթացին գետնաթավալ
Գազան ու հավք, սեզ ու թփուտ:
Երկինքն ի վար, ջրվեժի պես
Փրթաց մի խոլ տեղատարափ,
Շափշափելով զարկեց, ծեծեց
Լեռ ու հովիտ, շամբ ու քարափ…

Եվ լեռն ի վար, հովտն ի վար
Հասեց եկավ տիղմը դեղին,
Եկավ ձուլվեց օձագալար
Դեղին գետի սև հեղեղին:
Զգվեց, փքվեց վիշապը գոռ,
Առաջ սողաց փրփրաբերան.
Թե պատնեշ կա—կանգնի՜ թող որ,
Թող որ կո՜ւրծքն իր դեմ տա նրան…

3.

— Հեղե՜ղ, է-հե՜յ, ո՞վ կա քնած…—
Կանչեց գուժկանն ահեղագոչ.—
Ու թաղեթաղ բոթը գնաց,
Ոտքի հանեց քաղաքն ամբողջ:

Դուրս թափվեցին մանուկ ու մեծ
Քնակոլոլ ու կիսամերկ,
Խռնըվեցին փողոցներում
Ճիչ ու կանչով սրտակեղեք...
— Հեղե՜ղ, հեղե՜ղ,—կանչում էին,
Փողոց խուժում խուճապահար,—
Վա՜յ մեր օրին ու արևին,
Դեղին դևին դարձանք ավար...
— Հեղե՜ղ, հեղե՜ղ,—իրար ձայնում,
Փախչում էին մանուկ ու մեծ,
Փախչում էին ու բարձրանում
Բլուրները քաղաքամերձ...

Իսկ նա, ով սիրտ ուներ խրոխտ,
Լանջ ուներ կուռ ու կուռ մկան,
Ով թրծվել էր հնոցի մոտ
Ու բոցի տակ արեգական,
Ով խոցոտվել էր բյուրավոր
Գնդակներով գոմինդանի
Եվ քրտինքով գիշեր ու զոր
Հիմք դրել նոր անդաստանի,—
Հենց գուժն առավ, ելավ մեկեն,
Բահ ու քլունգ առավ շտապ,
Հեղեղ դարձավ հեղեղի դեմ
Ու սլացավ դեպի գետափ։

4.

Գետի ափին՝ մրջնի նման
Դժվժում է մի բազմություն.
Խուճապահար ու խուռներամ՝
Վազվզում է կիսամթում։
Քար է կրում գետափն ի վար,
Ճումբ է բերում, բերում գերան,
Որ կառուցի կուռ մի պատվար
Հրեշի դեմ փրփրաբերան։
Ծառս է լինում հրեշն ահա
Եվ աղեղում մեջքը ճկուն,
Մրջյունների պարսի վրա
Երախով մեկ տիղմ է թքում,
Գազազում ու ֆշշում է թեժ,
Պարզում լեզուն փրփրակալած,
Սրբում-լիզում խութ ու պատնեշ
Եվ հաղթական սուրում առաջ...
Ընկրկում են մարդիկ շվար.
Ջուր են ջանքերն ու ապարդյուն։
Նահանջում են խուճապահար
Ու նորից նոր առաջ նետվում։
Բայց զուր... Գալիս է նա անկանգ,
Որ հոշոտի ու կործանի,
Տարիների վաստակը թանկ
Մի գիշերում սրբի տանի...

— Ա՜խ դարավոր դեղին վրեժ,



Դեղին հրե՜շ ամենակուլ,
Թող անիծվա՛ծ լինի հավերժ
Քո ակունքն ու երկունքը կույր...
Հալածվելով դար ու դարեր
Արև-աստծու նետերից կեզ՝.
Քո փեշերին ենք ծվարել,
Ապավինել մեր բախտը քեզ։
Մի բուռ տղմուտ ջրի հետ քո
Խառնած քրտինք հազար մի բուռ՝
Դարձրել ենք ափերդ չոր
Այգեստաններ դրախտաբույր։
Ու փնտրելով թե՛ բախտ, թե՛ գանձ,
Հորձանքներում քո փրփրան,
Տված քո մի բարու դիմաց
Փառք ենք տվել հազար բերան
Եվ կոչել ենք քեզ գետամայր...
Մինչ դու ուտել ես փրփրադեզ՝
Մոլուցքի մեջ ցավագալար
Մոռանալով աշխարհն ու քեզ...
Դեղի՛ն դու գետ, լեղի՛ դու գետ,
Չինաց աղե՛տ հազարամյա,
Մենք չե՛նք թողնի, որ այսուհետ
Մեր տունը շեն՝ դարձնես ամա։
Մեր հաղթ կրծքով կխոյանանք
Անհաղթ, անառ Շանգ-Շենգի* պես,
Եվ, դո՛ւ, վիշա՛պ, մեր ոտքի տակ
Կխլվլաս ինչպես խլեզ...

Սրտապնդող ճիչ ու կանչով
Բազմությունն է խռնվում կրկին,
Հորձանք տալիս ինչպես մի ծով,
Ալիքվելով գետեզերքին։
— Նետվե՛նք անվախ ու անվհատ,
Մարտի՛ նետվենք օրհասագին.
Բազուկներով, կրծքով մեր հաղթ
Պատնեշ կապենք սև հորձանքին...—
Աղմկում են, և գահավեժ
Ջուրն են նետվում մարդիկ անահ,
Խելակորույս արբեցման մեջ
Մոռանալով թե՛ կյանք, թե՛ մահ,
Փլվում, խուժում են ափն ի վար,
Ինչպես ջրվեժ ձյունահյուսի,
Նետվում են ու սեղմվում իրար,
Շարքով կանգնում և ուս-ուսի...

Պայքար է սա մահու-կենաց,
Կենաց-մահու ահեղ մի մարտ.
Ծառանում են իրար դիմաց,
Իրար բախվում տարերք ու մարդ։
Խոյանում է հրեշը կույր,
Հորձանք տալիս ու ծփծփում,
Եվ մարդեղեն վեմերը կուռ

* Չինական պարիսպը

Տիղմով, ճիմով իրար ծեփում,
Մագլցում է կուրծքը նրանց.
Ու հրմշտում կողերով պաղ,
Ծառս է լինում թևատարած,
Ճիրաններով ցեխաշաղախ,
Պոկոտել է ջանում ասես
Ոսոխներին երկոտանի,
Որ ափին առնի դոդոշի պես
Եվ անդունդի գիրկը տանի...
Գետափով մեկ շարքերի մեջ
Կոչն է մարդկանց թռչում-թնդում,
Սիրտ են տալիս իրենք իրենց,
Իրենք իրենց ոգեպնդում.
Բայց չէ՛, չկա՛ լքուն մի սիրտ,
Կնաբարո մի փոքրոգի,
Դասալքման մի քայլն անմիտ՝
Կործանո՜ւմն է ամբողջ զորքի...
Ու զարնվում է հրեշն անհագ,
Ճլմփոցով գալարվում ետ,
Ծաղր է թվում հողաբնակ
Գաճաճների տարերքը խենթ.
Ծա՜ղր է թվում... Մինչդեռ ամուր
Բետոնվել են նրանք իրար.
Երկուսը չեն, հազա՜ր են, բյո՜ւր,
Միահամուռ ու միավառ.
Մարդ են նրանք, մարդ են մեզ պես,
Քնքշանք ունեն և ունեն սիրտ,
Բայց օրհասի պահին այս թեժ
Բետոնից էլ պինդ են ու բիրտ,
Շաղախ են ձույլ, կուռ մի շաղախ,
Որ կոփել է կյանքը՝ դարբին,
Որ ծառացած կուրծք տան խիզախ
Մրրիկների շունչ ու թափին...
Ու ձգվում է գիշերն անծայր,
Ակնթարթը դար է թվում,
Լուսինը՝ պաղ, կաթվածահար,
Թառել-սառել է վերևում.

Եվ լուսնկա անդորրի մեջ,
Ցոլքերի մեջ արծաթ ու կաթ,
Պապենական ոխով անշեջ
Մաքառում են տարերք ու մարդ...
Սպասումով տագնապահար
Կուչ է եկել քաղաքն հեռվում,
Ու ձգվում է գիշերն անծայր,
Ակնթարթը դար է թվում...

5.

Գիշերն ի՛բուն տարերք ու մարդ
Ինքնամոռաց մաքառեցին,
Ու դեղին դևն ամոթապարտ՝
Տեղի տվեց լուսաբացին.
Թշշաց-ֆշշաց հուսակտուր
Եվ հին, համեստ հունով սողաց՝
Ափին թողած տիղմ ու մամուռ
Եվ ավազի թմբեր թողած.
Իսկ նրանք, որ մահու առաջ
Պատնեշ դառած մաքառեցին,
Հաղթանակով փառավորված՝
Քաղաք իջան լուսաբացին...

6.

Եվ տուն դարձավ ճակատը բաց
Հերոսների թափորը հոծ,
Կենաց-մահու մարտում առած
Մկրտությամբ հրաշագործ.
Դարձավ... սակայն էգուց-էլօր
Ոտքի կելնի շարքերով բյուր,
Որ աղետի դեմ դարավոր
Պատնեշ քաշի բետոնակուռ,
Որ ոչ մի գետ, ոչ մի աղետ
Չսողոսկի իր տունը շեն,
Որ ջրերի կարկաչի հետ
Երգ ու ծիծաղ անխառն հնչեն...

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

# ՀԵՔԻԱԹ ՓՈՔՐԻԿ ՏՂԱՅԻ ԵՎ ԵՐԿՈՒ ՀՐԱՇՔ-ԵԶՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*ԻՇՏՎԱՆ ԿՈՐՄՈՇ*



Կար-չկար հեռավոր մի երկրում շատ հին մի ծառ կար, որ ուներ յոթանասունյոթ ճյուղ, յոթանասունյոթերորդ ճյուղից կախված էր մի նախշուն տոպրակ։ Մի անգամ ես եղա այդ ծառի մոտ, բաց արեցի տոպրակը և, գիտե՞ք ինչ, գտա այս հեքիաթը։

* * *

Բարձր լեռների լանջին, սոսափող ծառերի տակ կար մի փոքրիկ տնակ. այդ տնակում ապրում էր մի աղքատ այրի։ Նա ոչ ոք չուներ, բացի մի փոքրիկ տղայից, իր փոքրիկ, բայց շատ բարի Գառնիկից։ Գառնիկն էր նրա միակ հույսն ու ապավենը։ Թեև նա դեռ շատ փոքր էր, բայց արդեն գնում էր լեռներն ու անտառները՝ փայտ բերելու, որ ինքն ու իր մայրիկը տաքանան։ Դեռ լույսը չբացված, վաղ առավոտյան մի կտոր հաց տոպրակի մեջ դրած, ուրախ շվշվացնելով նա անտառ էր գնում, իսկ մայրը դուրս էր գալիս, արցունքն աչքերին նայում նրա հետևից։

Մի անգամ, երբ շատ քաղցած էր, Գառնիկը նստեց հաց ուտելու։ Հենց որ բաց արեց հացի տոպրակը, տեսավ իր առջև կանգնած է մի ճերմակահեր ծերունի։

— Տղա ջան, մի քիչ հաց կտա՞ս, երեք օր է, որ ոչինչ չեմ կերել։

— Վերցրու, պապիկ ջան,— Գառնիկը կիսելով հացը՝ կեսը տվեց ծերունուն, իսկ կեսը սկսեց ինքն ուտել։

Հացը շուտ վերջացավ, որովհետև շատ քիչ էր։ Ծերունին նայեց տղային։

— Ոչինչ, տղաս, ես տեսնում եմ, դու բարի սիրտ ունես, քո վերջին պատառը կիսեցիր ինձ հետ. դու ցույց տվեցիր քո բարությունը, հիմա նայիր, ես էլ իմս ցույց կտամ։

Եվ նա իր տոպրակից հանեց մի փոքրիկ սայլակ՝ այնքան փոքրիկ, որ անիվներն հազիվ կոճակի չափ լինեին։ Հետո տոպրակից հանեց մի շատ փոքրիկ, դեղին եզ, որի ճակատին կարծես փայլում էր արևը։ Ծերունին եզանը կանգնեցրեց սայլակի առաջ։ Երկրորդ անգամ ձեռքը մտցնելով տոպրակի մեջ, այնտեղից դուրս բերեց երկրորդ եզը, այս անգամ արդեն կապույտ, որի ճակատին շողում էր փոքրիկ մի կիսալուսին։

Դառնալով Գառնիկին, ծերունին ասաց.

—Տղաս, վերցրու սրանց, այս երկու եզները սայլի հետ միասին տալիս եմ քեզ։ Չկարծես թե խաղալիք են. սրանք քեզ համար մեծ ծառայություն կկատարեն։ Սրանք կհասկանան ու կկատարեն այն ամենը, ինչ որ դու ցանկանաս։ Միայն ոչ մի անգամ չբաժանվես սրանցից, թեկուզ քեզ գանձեր խոստանան։

Գառնիկը շատ զարմացավ, երբ եզներին նայելուց հետո, շուռ եկավ ու տեսավ ծերունին չկա։

— Մի՛ զարմացիր, մեր փոքրիկ տեր, լավ կանես, շուտ սայլակը բառնաս, որովհետև մենք չենք սիրում պարապ մնալ։

— Թող ձեր ասածը լինի,—ավելի զարմանալով պատասխանեց Գառնիկը ու մի չոր փայտ դրեց սայլին։

— Կարո՞ղ եք տանել,—հարցրեց նա։

— Էլի՛ բարձի՛ր,— շարժելով իրենց պոզերը հասկացրեցին եզները:

Դառնիկն սկսեց սայլին նոր չորուկներ դարսել:

— Մեր փոքրիկ տեր, գերաններ դարսիր, գերաններ,— ձայն տվեցին փոքրիկ եզները:

Տղան սկսեց բարձել ու մեկ էլ տեսավ՝ գերանները իրենց-իրենց մեկը-մյուսի հետևից դարսվում են սայլի վրա:

Քիչ հետո սայլը ծանրության տակ սկսեց ճռճռալ:

Եվ հանկարծ հրաշք-եզները պոկվեցին իրենց տեղից: Անտառում եղած բոլոր կենդանիները՝ արջերը, սկյուռները, նախշուն հավքերը՝ թաքնված ծառերի ու խիտ թփերի տակ, զարմացած նայում էին նրանց հետևից:

Ոչ մի ծանրություն չզգալով, եզները հաստատ քայլելով, սայլը դուրս բերեցին անտառի խորքից ու բռնեցին գյուղի ճամփան:

Վերջապես նրանք հավասարվեցին սև քարով շարված դղյակին: Դղյակի առաջ կանգնած էր տանտերը. նա չռեց աչքերը հրաշք-եզների վրա ու կորցրեց իրեն: Ապա ուշքի գալով, ձայն տվեց Դառնիկին.

— Ա՛յ տղա, ո՞ւմն են այդ եզները, չե՞ս վաճառի դրանք ինձ:

— Չ՛է, չեմ վաճառի:

— Ի՞նչ...

— Չե՛մ կարող վաճառել:

— Ա՜խ, դու, անպետք: Այդ դեպքում չեմ թողնի տուն գնաս, մինչև արմատահան չանես Սև անտառի բոլոր ծառերը և չբերես ու դարսես իմ բակում:



Նա ջղայնացած ներս մտավ ու իր հետևից փակեց դուռը:

Դառնիկը լսելով այդ խոսքերը, տխուր նստեց ու սկսեց մտածել: Հանկարծ հրաշք-եզները խոսեցին.

— Մ՛ի տխրիր, մեր փոքրիկ տեր, լավ է արի շուտ գնանք Սև անտառ:

Երբ նրանք հասան Սև անտառ, Դառնիկը նայեց խաղաղ անտառին, որի ծառերը մինչև երկինքն էին հասել և նրանց կատարներին սև ագռավներն էին բույն դրել. նայեց ու տխուր ախ քաշեց.

— Ա՛յ քեզ Սև անտա՜ռ. ի՞նչ կարող ենք անել հիմա մենք...

— Կանենք այն, ինչ հարկավոր է,— պատասխանեց նրան Դեղին եզը: — Ավելի լավ է ոլորիր ու հանիր իմ աջ եղջյուրը, այնտեղ դու կգտնես երկար, շատ երկար մի պարան. վերցրու այդ պարանը, մի ծայրը կապիր իմ աջ եղջյուրին, իսկ մյուս ծայրը ընկերոջս եղջյուրին և դու հանգիստ նայիր, թե մենք ինչ ենք անելու:

Դառնիկը այդպես էլ արեց:

Հանկարծ դեղին եզը փնչացրեց ու պոկվեց տեղից, պարանը եղջյուրին մի ակնթարթում նա պտտվեց Սև անտառի շուրջը: Եկավ ու նորից կանգնեց կապույտ եզան կողքին: Անտառն ասես մի հսկայական խուրձ լիներ պարանով կապած: Հետո լսվեց մի ահավոր շառաչյուն, երկու հրաշք-եզները ձգվեցին առաջ՝ դեպի Սև դղյակը, իրենց հետևից քարշ տալով ողջ անտառը: Ագռավները բարձր կռկռոցով պտտվում էին շարժվող անտառի վրա:

Եվ ահա եզները մոտեցան Սև դղյակին, բայց հնարավոր չէր դարբասից ներս մտնել. դրա համար նրանք ստիպված եղան ամբողջ Սև անտառը պարսպի վրայով ներս գցել:

— Ահա՛ քեզ Սև անտառ, իշխա՛ն, ստացիր,— ձայնեց Դառնիկը: Բայց ավելի բարկացավ իշխանը և տվեց նոր հրաման՝ ավելի դժվար, քան առաջինը:

— Լսի՛ր, լակո՛տ, հրամայում եմ, որ անմիջապես հերկես Ագռավասարը, ցորեն ցանես, բերքը հավաքես, աղաս և մինչև արևի մայր մտնելը ալյուրը դղյակս բերես:

Սաստիկ տխրեց Դառնիկը, նստեց ու սկսեց



մտածել։ Այդ ժամանակ մոտեցավ նրան եզներից մեկը և, եղջյուրով կամաց հրելով, գլխի շարժումով հասկացրեց նրան, որ գնան, և նրանք բռնեցին Ագռավասարի ճանապարհը։

Երբ նրանք հասան Ագռավասարը, Գառնիկն սկսեց մտածել. ի՞նչ անել... Գառնիկը դեռ մտածում էր, երկու հրաշք-եզները սկսեցին աշխատել. մի շնչով նրանք հերկեցին Ագռավասարը։ Իսկ ցանելը կատարեցին մի ակնթարթում՝ փչեցին և ամբողջ հերկը ցանված էր ցորենով։ Արտն սկսեց ծլել ու բարձրանալ, հասկերը լցվեցին։ Հարկավոր էր արդեն բերքը հավաքել։ Գառնիկը առանց հանգստանալու քաղում էր հասած ցորենը, խուրձեր էր կապում։ Բայց այդ ժամանակ Սև դղյակի իշխանը իր ներքնահարկում գինի էր խմում ու ծիծաղում, ձեռքերը շփում իրար ու մտածում.

— Հրաշք-եզները իմս կլինեն։ Այդ լակոտը չի կարող, իհարկե, իմ հրամանը կատարել։

Այո, շատ դժվարին խնդիր էր առաջարկել իշխանը։ Արդեն արևն իջնում էր Ագռավասարի հետևը, իսկ մյուս կողմից դուրս էր գալիս լուսինը։ Դեռ աշխատանքի կեսը հազիվ էր կատարված։ «Ի՞նչ պիտի անենք հապա»— մտածում էր Գառնիկը։ Բայց հանկարծ կապույտ եզը թռավ ու լուսինը վերցնելով իր եղջյուրներին, շպրտեց Ագռավասարի մյուս կողմը։ Իսկ դեղին եզը իր եղջյուրներով արևը բարձրացրեց ու դրեց երկնքի ուղիղ մեջտեղը։ Դրանից հետո սկսեցին կալսել։ Երկու փոքրիկ հրաշք-եզները փչելով՝ ցորենի դեզը քամու պես վեր էին թռցնում, և բարձրանալով վերև, այնտեղից ալյուր դարձած թափվում էր ուղիղ պարկերի մեջ։ Գառնիկը հազիվ հասցնում էր պարկերի բերանը կապել։ Ամբողջ ալյուրը սայլին բարձած, ուղևորվեցին դեպի Սև դղյակը։

Հասնելով իշխանի տանը, հրաշք-եզները սկսեցին ալյուրով լցված պարկերը շպրտել Սև դղյակի շուրջը։ Պարկերն այնքան շատ էին, որ ծածկեցին Սև դղյակը, Սև դղյակի տերը փրկվեց նրանով, որ կարողացավ բարձրանալ դղյակի կտուրը և այնտեղից սարսափած նայել, թե ինչ է կատարվում իր շուրջը։

— Լսի՛ր, իշխա՛ն,— ներքևից ձայն տվեց Գառնիկը,— ես կատարեցի քո հրամանը՝ բերեցի ալյուրը։ Եթե ունես մի ուրիշ ցանկություն, ասա՛՝ կկատարեմ։

— Գրողի ծո՛ցը,— ջղայնացած գոռաց Սև դղյակի իշխանը։

— Դրանից էլ հեշտ բա՞ն,— ծիծաղելով ասաց Գառնիկը ու իշխանին նստեցրեց սայլակին։

Գառնիկը ձայն տվեց հրաշք-եզներին, նրանք սլացան դեպի դժոխք։



Սայլակը քամու պես սլանում էր բարձր լեռների վրայով, լայնատարած դաշտերով, խոր-խոր ձորերով։ Միայն լսվում էր հրաշք-եզների փնչոցը։ Սև իշխանը երկյուղից կուչ եկած՝ երկու ձեռքերով ամուր բռնել էր սայլի կողերից, որպեսզի վայր չընկնի ու ջարդուփշուր լինի, իսկ Գառնիկը իր համար ուրախ շվշվացնում էր։

Հանկարծ եզները կանգ առան. հասել էին արդեն դժոխքի դռանը։ Դժոխքի դռները երկաթապատ էին ու փակ. դռների շուրջը թռչկոտում էին չղջիկները։

Իսկ դժոխքի ներսից բարձրանում էին կրակի ու ծխի դեղնակարմիր ամպեր։

— Հասանք, իշխա՛ն,— ձայն տվեց Գառնիկը։

Դժոխքի դռներն իրենց-իրենց բացվեցին, բայց իշխանը կանգնել ու առաջ չէր գնում։ Սարսափած նայում էր Գառնիկին և ուզում էր բռնել եզների եղջյուրներից։ Այդ ժամանակ եզներն ուժեղ փչեցին և Սև իշխանը գնդակի պես գլորվեց ու ընկավ դժոխքը։ Դժոխքի դռներն աղմուկով փակվեցին։ Գառնիկը արագ բարձրացավ և զցեց սողնակը։

Հետո ի՞նչ պատահեց իշխանի հետ, դա արդեն ինքներդ կարող եք պատկերացնել։ Իսկ Գառնիկը նստեց սայլակի մեջ, և հրաշք-եզները նրան բերին ու հասցրին իր հարազատ մորը։

Նրանք մինչև հիմա էլ ապրում ու կյանք են քաշում, եթե դեռ չեն մահացել։

Փոխադրեց՝ ԵՐՋ. ԱՌԱՔԵԼՅԱՆ



Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

# ԹԵՎԱՎՈՐ ԱՅԳԵՊԱՆՆԵՐ

ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Ծտերն ահա մտան այգի,
Կարծես եկան աշխատանքի.
Ամեն մի խումբ ընտրեց մի ծառ,
Ու բոլորն էլ գործի անցան։
Կտկտոցն է լսվում անվերջ
Պտղավորված ճյուղերի մեջ.
Ջուր է թրթուրն այն խորամանկ
Եկել մտել տերևի տակ։
Շոր է հագել կանաչ գույնի,
Որ տերևի նման լինի։
Թևավորներն իսկույն գտնում,
Տերևի տակ զգույշ մտնում
Ու մաքրում են՝ թիկ-թա՛կ, թիկ-թա՛կ,
Ո՛չ մի թրթուր տերևի տակ։
Պարզ է, իրենք չեն հասկանում՝
Ինչ օգտակար գործ են անում,
Իրենք սնվում, այգին փրկում,
Հետն էլ ուրախ երգ են երգում։
Դուք շա՛տ ապրեք, օգնականներ,
Մեր թևավոր այգեպաններ...

ՎԱԶԳԵՆ ՏԱԼՅԱՆ

# Համառ տղան

Ոտքը փոշոտ, ձեռքը մրոտ,
Վաչե՛ն կանգնեց քարտաշի մոտ:
— Այդ ինչու՞, ես թրև գալիս:
— Արձակուրդ է երկու ամիս:
Տաշե՞մ մի քար...
— Բարո՜վ եկար,—
Հեգնեց պապը, մուրճը դրեց,
Անկոչ հյուրին մատով հրեց,
Զափեց նրան ոտից գլուխ...
Նորից խնդրեց պատանին թույլ:
— Լավ, էս քարը մոտիկ քաշիր,
Նստիր կողքիս, մի քիչ տաշիր:—
Մուրճը առավ, զարկեց տղա՛ն,
Բեկորները չորս կողմ թռան:
Քարտաշը թե՝ պինդ ձեռք ունես,
Որ սովորես, լավ գործ կանես:
Վաչեն թևքերը վեր քաշեց,
Կրակ կտրած տաշեց, տաշեց....
Մեկ էլ թափով խփեց մատին,
Մուրճը ձեռքից գցեց գետին:
Վարպետն ասաց.—Ոչի՜նչ, ոչի՜նչ,
Ցավ է, կանցնի. պինդ կաց մի քիչ...
Հենց այդ գործն էլ ընտրեց Վաչեն:
Հիմա դժվար թե ճանաչեն
Թուխ պատանուն համազգեստով,
Հպա՛րտ է նա իր արհեստով...





Մարտիրոս Սարյան

Դահլիճը հոտնկայս ծափահարում էր. ծափահարում էր նախագահությունը, ծափահարում էին համաքաղաքացիները, հյուրերը. բեմի կենտրոնում կանգնել էր ծերունազարդ նկարիչը և նույնպես ծափահարում էր։ Նա ծափահարում էր դահլիճում նստած մարդկանց, նրանց, ովքեր Հայաստանի բնության և արևի հետ մեկտեղ լցրել էին նկարչի կտավները, դարձել նրա հերոսները։ Հերոսները ծափահարում էին իրենց կերպարների հանճարեղ ստեղծողին և ո՞վ գիտե, վերջ կունենայի՞ն ծափերը, եթե դահլիճը չմտածեր ալեհեր նկարչի մասին, այն մասին, որ ութսունամյա ծերունու համար դժվար կլինի երկար կանգնելը։ Ծափերի որոտի հետ ժողովրդի սերն էր հորդում դեպի իր նկարիչը, որը արժանացել էր մեր երկրի ամենաբարձր պարգևին՝ Լենինյան մրցանակի։

Մարտիրոս Սարյանը մեր Միության առաջին գեղանկարիչն է, որ Լենինյան մրցանակ ստացավ և այդպես էլ պետք է լիներ, որովհետև նա գույների ամենամեծ վարպետն է, կերպարվեստի միջոցով մարդկային հոգեբանության ամենամեծ արտահայտիչը։ Մոսկվայից նրան ողջունելու եկած նկարիչներից մեկը նրա մասին ասաց. «Կոլորիստ № 1», իսկ ՍՍՌՄ ժողովրդական արտիստ Յու. Զավադսկին այսպիսի խոսքեր ուղղեց մեծ նկարչին. «Ես խոնարհվում եմ ձեր առջև, բոլոր մոսկվացիների երախտագիտական խոսքը ուղղում ձեզ, որոնք սիրում ու գնահատում են ձեր ազնիվ, չքնաղ ու մեծ արվեստը»։

Մեծ է Սարյանի արվեստը. նա մագնիսի նման աշխարհի բոլոր ծայրերից արվեստասեր մարդկանց քաշում բերում է նկարչի արվեստանոցը, որը մի կախարդական վայր ասես լինի։

## ԻՆՉՔԱՆ ԵՆ ԱՊՐՈՒՄ ԾԱՂԻԿՆԵՐԸ

Ծաղիկներն ինչքա՞ն կարող են ապրել. ինչքա՞ն կապրեն նրանք, մանավանդ, ծաղկամանում, ջրի մեջ դրված. մե՞կ օր, երկո՞ւ օր, թե՞... դարեր..

...Ցածրիկ մի սեղանի վրա ծաղկամաններով ծաղիկներ էին դրված։ Ոսկեդեղինն ու ալ կարմիրը, կապույտն ու մանուշակագույնը, նարինջն ու ճերմակը վառվում էին կանաչի վրա։ Դրանց մի մասը բերված էր ծաղկանոցներից, մյուս մասը դաշտային էր։ Արվեստանոցում մի շշմեցուցիչ բուրմունք էր կանգնած։

Ալեհեր նկարիչը՝ հսկայական մի ճերմակ կտավի առաջ նստած, վրձինը ու ներկապնակը ձեռքին, երկար նայում էր ծաղիկներին։

Հետո նա սկսեց նկարել։ Վրձինը բարձրանում ու իջնում էր կտավին այնպես, կարծես նկարչի ձեռքին ոչ թե վրձին էր, այլ մուրճ. և նա ոչ թե նկարում, այլ կոփում էր ծաղիկները, որոնք իրար հետևից բացվում էին ճերմակ կտավի վրա, ասես կախարդական մի ուժով։ Հետո նկարիչն այնպես տարվեց աշխատանքով, որ աշխարհում նրա համար մնացին միայն այդ ծաղիկներն ու ներկերը, մնաց ծաղիկների մոլորեցնող բուրմունքն ու մեկ էլ մի երգ, որ ծայր էր առել նկարչի սրտում ու քանի գնում բորբոքվում էր, ալեկոծում նրա հոգին։ Այսպես, սպիտակ կտավը նկարչի խորաթափանց հայացքի տակ ծաղկեց, կենդանացավ, իսկ երրորդ օրը, երբ նա կտավի վրա հոգնած ձեռքով դրեց իր ստորագրությունը՝ «Մարտիրոս Սարյան», հրաշքն արդեն կատարված էր...

Ծաղիկներն ինչքա՞ն կարող են ապրել...

...Այս ծաղիկները դարեր կապրեն։

Նրանք եկել էին հեռվից։ Մեկը Հյուսիսից էր, մյուսը՝ Հեռավոր Արևելքից, երրորդը Լիտվայից։ Կային Բելոռուսիայից, Ուրալից ու Միջին Ասիայից։ Տուրիստներ էին, եկել էին Հայաստանը տեսնելու։ Երբ օդանավը ճեղքելով ամպերի հաստ շերտը՝ իջավ Երևանի օդանավակայան, նրանք հնարավորություն չունեցան նույնիսկ Արարատը տեսնելու։ Ամպամած օր էր, և տուրիստները միանգամից չզգացին Հայաստանն այնպես, ինչպես որ պետք էր։ Հաջորդ օրը իրենց ծանոթությունը Հայաստանի հետ նրանք սկսեցին թանգարանից, հետո այցելեցին Մարտիրոս Սարյանի ցուցահանդեսը։ Հենց այստեղ էլ տուրիստների համերաշխ կոլեկտիվը բաժանվեց երկու մասի։ Սկսեցին վիճել իրար հետ, համոզել միմյանց։ Մի երիտասարդ նկարիչ, որ Սարյանին վաղուց գիտեր, աշխատում էր մի տարիքավոր կնոջ հասկացնել, որ Սարյանը մեծ, շատ մեծ նկարիչ է, իսկ կինը համառում էր, նայում էր նկարներին ու ասում. «Համաձայն եմ, գուցե իրոք մեծ նկարիչ է Սարյանը, բայց ինձ չեն հասնում այս նկարները։ Դե տեսե՛ք, մի՞թե ստվերը երկնագույն է լինում, կամ մի՞թե աշխարհում այսպիսի ծառեր կան»։

Այսպես, նրանք վիճում էին մերթ այս, մերթ այն նկարի առաջ կանգնելով, և նրանցից ամեն մեկն իր կողմնակիցներն ուներ։

Բայց այդ վեճը շուտ ավարտվեց։ Տասնմեկ օր հետո, երբ Հայաստանում արդեն շրջագայելով, նրանք օդանավով վերադառնում էին Երևան, մի տեղացի ուղևոր նկատելով, որ տուրիստներ են, հարցրեց.

— Հավանեցի՞ք Հայաստանը։

Տարիքոտ կինը, որ մինչ այդ պատուհանից նայում էր դուրս, շուռ եկավ ու ասաց.



— Իսկ մենք Հայաստանը տեսել էինք արդեն... Սարյանի կտավներում...

Երիտասարդ նկարիչը քթի տակ ժպտում էր։ Նա գիտեր, որ այդպես էլ կլինի։ Ով Հայաստանը տեսնում է՝ ավելի խորն է զգում Մարտիրոս Սարյանի ստեղծագործությունը։

## ԿԱՆԱՉ ՎԻԹԽԱՐԻ ԸՆԿՈՒԶԵՆՈՒ ՏԱԿ

Հեռվում լեռներն են՝ կապույտ, մանիշակագույն, որոնք ասես հսկաների պես իրար հրելով խոյանում են վեր, դեպի կապույտ երկինքը։ Ներքևում նորից լեռներ են, բլրաշարքեր, որոնց վրա դեղին ու նարնջագույն քառակուսիներով ընկած են արտերը։ Բարձր, երկնասլաց քերծերի վրա հին հայկական վանքեր ու ամրոցներ կան, ժայռեղեն դարավանդներին՝ զարմանալի ծառեր, որոնք կախվել են քերծերի պռունկներից և ասես ուր որ է ցած կընկնեն։ Ներքևում, կանաչի մեջ թաղված հայկական գյուղն է, իսկ գյուղի ծայրին՝ կանաչ, վիթխարի ընկուզենիներ, որոնց ստվերում խումբ-խումբ պարում են կանայք ու տղամարդիկ։ Երաժիշտները չեն նկատվում, բայց մենք լսում ենք ավանդական զուռնայի ուրախ ելևէջները, որ արձագանքում են հեռավոր լեռներում։

Ակամա հիշում ես Թումանյանի «Հին օրհնություն» բանաստեղծությունը.

*Կանաչ, վիթխարի ընկուզենու տակ,*
*Իրենց հասակի կարգով ծալպատակ,*
*Միասին բազմած,*
*Մի շրջան կազմած,*
*Քեֆ էին անում*
*Եվ ուրախանում*
*Մեր հսկա պապերն ու մեր հայրերը...*

Ահա Սարյանի «Իմ Հայաստան» շարքից ևս մի կտավ։ Այստեղ գրեթե այնպես է, ինչպես նկարագրված է «Հին օրհնության» մեջ։ Հսկայական ընկուզենու տակ նստած են մի խումբ տղամարդիկ ու քեֆ են անում։ Հեռվում հայկական լեռներն են՝ վեհ ու երկնասլաց։ Խոր-խոր ձորեր են ու սրածայր քերծեր։ Այս նույն կտավի աջ մասում, լեռնային գետի զառիթափ ափին հպարտորեն կանգնած է մի աղջիկ և տիրաբար նայում է հեռուն։ Թվում է, թե նա էլ մեր օրերի Անուշն է, որին այս չքնաղ, հարուստ լեռնաշխարհում միայն երջանկություն է սպասվում։

Սարյանի Հայաստանը դա արևաշատ, բախտավոր, իր դարավոր կապանքներից ազատված Հայաստանն է, որի մարդիկ «էլ չեն պղծում իրենց շուրթերն անեծքով» և երջանկության երգն են երգում կանաչ, վիթխարի ընկուզենու տակ։

## ԳՆԱՑՔԻ ՊԱՏՈՒՀԱՆԻՑ

Մոտ յոթանասուն տարի է, որ նկարում է Սարյանը, բայց մինչև այժմ էլ նա իր գործը կատարում է մանկական հափշտակությամբ։ Որտեղ էլ որ նա լինի, անբաժան է իր ներկերից, թղթից ու մատիտից։

Ահա մենք տպագրել ենք նրա ջրանկարները, որ կատարված են գնացքի պատուհանից։

Մի անանուն կիսակայարան Սարյանի վրձնով կարծես թե անմահացել է, գեղեցկություն են ստացել, շնչավորվել են մի ակնթարթում գնացքի պատուհանի առջևից անցած վայրերը։ Նկարչի խորաթափանց հայացքը գտել է բնության գեղեցկությունները և անցկացրել թղթի վրա, որ մարդիկ ավելի լավ տեսնեն ու զգան դրանք, որ նրանք անտարբեր չանցնեն բնության գեղեցկությունների կողքով, որ ավելի շատ սիրեն մեր հայրենի երկիրը, նրա բարձր լեռներն ու հովասուն անտառները, գեղատեսիլ հովիտներն ու անծայր տափաստանները։

* * *

Մարտիրոս Սարյանին Լենինյան մրցանակի հանձնումը համընկավ նրա ծննդյան ութսունամյակի տոնակատարությանը։ Եվ բոլոր նրանք, ովքեր ողջունում էին Սարյանին, խոսում էին նրա արվեստի ջահելության մասին, նրա երիտասարդական ավյունի մասին, նրա անսահման աշխատասիրության մասին։ Եվ իսկապես երիտասարդ է Սարյանի արվեստը, որովհետև նա իր գործերում ցույց է տվել մեր երկրի՝ Սովետական Հայաստանի ջահելությունը, նրա ուժեղ, արի, ստեղծարար մարդկանց, որոնք հրաշքներ են գործում։ Երբ նայում ենք Սարյանի ստեղծած դիմանկարներին՝ Թորոմանյանի ու Թումանյանի, Համբարձումյանի ու Ալիխանյանի, Օրբելու և Զարյանի, բազմաթիվ բանվորների ու սոցիալիստական աշխատանքի հերոսների դիմանկարներին, զգում ենք, թե ինչպիսի հոգեկան հարստություն ունեն նրանք, ինչպիսի կամք ու համառություն, ինչքան ձգտումներ ու երազանք։ Նայելով նրանց, մենք զգում ենք մեր Հայաստանը վերակառուցող մարդկանց, այն Հայաստանը, որ այնպես լավ է զգացել ու տեսել Մարտիրոս Սարյանը, մեր մեծ, մեր սիրելի նկարիչը։

# ՇԻՆԱՐԱՐ

ՎԱՐԴԱՆ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ



Տի՛, տի՛, տի՛, տի՛, ճանապա՛րհ,
Բերում ենք կիր, ավազ, քա՛ր,
Բետոնե մեծ բլոկներ,
Լուսափեղկեր և դռներ։
Մեքենան քար է տաշում,
Ու շաղախ է պատրաստում.
Տե՛ս, Մինասը գործարար
Պատրաստում է ծեփ ու քար.
Պատ է շարում Պողոսը,
Ծեփագործ է Պետրոսը,
Նրանց նման շատերը,
Բարձրացնում են պատերը։
Տի՛, տի՛, տի՛, տի՛, ճանապա՛րհ...
Կառուցում ենք անդադար,
Մեծ տներ ու լայն փողոց,
Մանկապարտեզ ու դպրոց։

# ԻՆՉՈ՞Ւ ՊԱՏԺԵՑԻ ԻՄ ՄԵԾ ՏԻԿՆԻԿԻՆ

ԼՈՒՍԻԿ ԲԱՌՆԱԿՅԱՆ

*Ահա տեսեք, երեք ժամ է սոված ու ծարավ կանգնած է անկյունում իմ մեծ տիկնիկը։*

*Նա խնդրում է ինձ, որ ես ներեմ իրեն։ Թող նա կանգնի։ Ես ուզում եմ ձեզ պատմել նրա մասին, ուզում եմ, որ դուք իմանաք, թե ինչու եմ պատժել ես նրան։*

*Ամեն բան կպատմեմ սկզբից։*

*Մայրիկս երբ մեզ համար զգեստներ էր կարում, ավելացած կտորները բաժանում էր իմ և Սուսաննայի միջև։ Իհարկե, ավելի մեծ և լավ կտորները միշտ բաժին էր ընկնում Սուսաննային։ Ես դրանից չէի դժգոհում, որովհետև Սուսաննան վաղուց իր սեփական տիկնիկները չուներ։ Իր տիկնիկը նա տվել էր ինձ և այդ կտորներից նա իմ տիկնիկների համար էր զգեստներ կարում։ Այսինքն՝ ոչ թե նա, այլ մենք՝ ես ու Սուսաննան։ Սուսաննան սովորել է մայրիկից, և այս տարի էլ դպրոցում անցնում են այդպիսի դաս՝ տնավարություն։ Սովորում են ձևել, կարել և նման տնային գործեր։ Ես խաղալիք կարի մեքենա ունեմ, որը կարում է համարյա թե մայրիկի մեքենայի նման։ Միայն թե թելի ծայրը պիտի լավ ամրացնել, եթե ոչ՝ մի անգամ քաշես, ամբողջ կարածը կքանդվի։ Իսկ ես ու Սուսաննան այնպես ենք ամրացնում, որ մեր կարածը երբեք չի քանդվում։*

*Ես էլ, Սուսաննան էլ շատ ենք սիրում*

կարել: Ինչու՞ միայն ավելացած կտորներով: Հայրիկս երբ տեսավ, որ Սուսաննան կարել է սովորել, մի օր երկու մետր չիթ բերեց, և ահա, տեսնո՞ւմ եք իմ հագի սարաֆանը, Սուսաննան է կարել: Դուք չեք հավատում, որովհետև շատ գեղեցիկ է կարված: Այո, մեր դպրոցի երեխաներն էլ չէին հավատում, իրենցից երկուսի քույրերն էլ 6-րդ «բ» դասարանում են՝ Սուսաննայենց խմբում, բայց դեռ կարել չգիտեն:

Այս տարի իմ մեծ տիկնիկին ես դպրոց ուղարկեցի, լրացել էր նրա յոթը տարին: Ես էլ եմ առաջին դասարանցի, նա էլ: Միայն թե ես իսկակա՛ն դպրոցում եմ, նա տիկնիկների: Ինչ դաս, որ մենք ենք անցնում, նույնն էլ նրանք, ինչ գրքեր որ ես ունեմ, նույնն էլ իմ տիկնիկը: Մենք դասները միշտ միասին ենք սովորում: Գրավոր աշխատանքներն էլ միասին ենք գրում:

Մի օր տուն եկավ տիկնիկս ու ասաց.

— Այսօր մեր ուսուցչուհին ասաց, որ անպայման աշակերտական զգեստներով պիտի գնանք դպրոց:

Ես հասկանում եմ, մեր ուսուցչուհին էլ է այդպես ասել:

— Լավ,— պատասխանում եմ ես:

Նույն օրը Սուսաննային խնդրեցի, որ տիկնիկիս հագով աշակերտական զգեստ ձևի: Ես անցա գործի: Ասեմ. Նախ կարում եմ ձեռքով, ասեղով ու թելով, հետո փորձում ենք Սուսաննայի հետ, հագցնում ենք տիկնիկին, երբ Սուսաննային դուր է գալիս, կարերը ամրացնում ենք մեքենայով:

Շագանակագույն գեյրա, սև և սպիտակ գույնի գոգնոցներ: Երեք օր չարչարվեցի, վերջապես ստացվեց:

Ես շատ գոհ մնացի. դեռ սպիտակ օձիք պիտի գործեի:

Բոլոր գործերս թողած՝ շտապ-շտապ գըլուխ եմ բերում տիկնիկիս աշակերտական զգեստը: Տեսնեմ՝ տիկնիկիս քիթը կախ է:

Հը, ի՞նչ է պատահել,— հարցնում եմ ես:

— Ինչո՞ւ մետաքսյա կտորից չկարեցիր,— ասում է նա:

Ահա թե ի՜նչ... դու աշակերտ ես, քեզ հարկավոր է հագնել կոկիկ, մաքուր ու գեղեցիկ և ոչ թե մետաքս...— բարկանում եմ նրա վրա:

Իսկ նա լաց է լինում:

Ա՜յ, թե ընկեր Համբիկն այստեղ լիներ, քեզ ցույց կտար լաց լինել:

Ընկեր Համբիկն ասում է, բոլոր աշակերտները պետք է հագնվեն միատեսակ, մաքուր, գեղեցիկ:

Դե լսեցեք, թե ինչ պատահեց մեր դասարանում:

Մեր դասարանցի Նարինեն օրական մի գույնի ու ձևի շոր է հագնում՝ բոլորը մետաքսից:

Մի օր նա հագել էր սպիտակ գեյրա: Դա-



սամիջոցին նստարանի վրա թանաք էր թափվել, ինքն էլ չէր նկատել, եկել ու նստել էր թափված թանաքի վրա։ Ու ամբողջ շորը թանաքոտվել էր։

Մի տեսնեիք, թե ինչ լաց էր սկսել, ոնց էր լալիս, ոնց... վա՜յ, վա՜յ, մայրիկս ինձ կսպանի, այս թանկանոց շորս նա թույլ չէր տալիս, որ հագնեի, դպրոց գայի, ես զոռով վերցրի, վա՜յ, մայրիկ ջան, վա՛յ...

Ամբողջ մեծ դասամիջոցին տզզաց, մինչև ուսուցչանոցից եկավ ընկեր Համիկը։

— Երեխաներ, ո՞վ է այդ անշնորհքը, որ թանաք է թափել նրա նստարանին, թող դուրս գա։

Ոչ ոք տեղից չշարժվեց։

— Գուցե ինքդ ես քո թանաքամանը ցած գցել, ահա, տեսնո՞ւմ ես, քո թանաքամանից է թափվել այդ թանաքը։



Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

— Այո, ընկեր Համիկ, նրա թանաքամանը գետնի վրայից մենք վերցրինք, տեղը դրեցինք,— ասացին հերթապահները։

Նարինեն ձայնն ավելի բարձրացրեց։ Գոռում է, ո՜նց է գոռում։ «Վա՜յ, մայրիկ ջան, վա՜յ...»

Ընկեր Համիկն աշխատում է հանգստացնել նրան, բայց բան դուրս չի գալիս։ Միջանցքի երեխաները հավաքվել են մեր դասարանի դռան առաջ ու հետաքրքրությամբ գլուխները ներս մտցրած դիտում են Նարինեին։ Նրանց թվում է, թե Նարինեի ոտքը կամ թևն է կոտրվել։ Իսկ երբ իմանում են բանն ինչումն է, ծիծաղում են ու հեռանում։

Այսօր դպրոցից ինձ զանգ է տալիս իմ տիկնիկի ուսուցչուհին։

— Ընկեր ծնող,— ասում է նա,— ձեր աղջիկը երկու օր է արդեն աշակերտական ըզգեստ չի հագնում։ Դուք տեղյա՛կ եք, ինչո՞ւ չի հագնում, չէ՞ որ նա զգեստ ունի։

Ես մնում եմ զարմացած. ինձ մոտ եմ կանչում ահա սրան՝ իմ մեծ տիկնիկին և հարցնում։

— Դու օգտվում ես այն հանգամանքից, որ ես տանը չեմ լինում, դպրոց ես գնում առանց աշակերտական զգեստի։

Նա կմկմում է, ուզում է ինձ խաբել, բայց ես նայում եմ ուղիղ նրա աչքերի մեջ։

Նա խոստովանում է.

— Այո, ես ավելի շատ այն մյուս շորերն եմ սիրում, պատասխանում է նա։

— Հիմա թե ինչ։ Կանգնիր անկյունում,— հրամայում եմ ես։

Եվ ահա երեք ժամ է արդեն, որ նա կանգնած է անկյունում. ոչ հաց եմ տվել նրան, ոչ ջուր...

Բայց հանկարծ մոտենում եմ ու բաց եմ անում իմ տիկնիկի շորերի պահարանը։

Պա՜հ, պա՜հ, պա՜հ, կարծես նոր եմ տեսնում, ինչո՞ւ ենք ես ու Սուսաննան այսքան լավ զգեստներ կարել նրա համար, իսկ մյուս տիկնիկներին՝ համարյա թե ոչ մի հատ։

Հիմա նա ներողություն է խնդրում ինձանից, թող նստի, գիտեմ, նա այլևս առանց աշակերտական զգեստի դպրոց չի գնա։



# ԱՇԽԱՏԱՍԻՐՈՒԹՅԱՆ ԳԱՂՏՆԻՔԸ

ԳԱՏՎԱԿԱՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

Անտառի ծմակում մայր արջը տուն էր դրել: Նա առավոտ ծեգին կացինը գոտին էր խրում, մտնում հաստաբուն անտառը և փայտահատի համեստ վաստակով պահում-պահպանում իր միունճար Քոթոթին:

Ընտիր կերակուրը տնից անպակաս էր: Եվ Քոթոթը ուտում էր, ինչ սիրտն էր ուզում: Կշտանում էր, թե չէ, իր քեֆին փռվում էր մոր գործած խսիրին ու խոմփացնում մինչև սովածանալը:

Ծնված օրից ոտը տնից դուրս չէր դրել: Նա չգիտեր, օրինակ, թե ի՞նչ բան է անտառը: Նրան թվում էր, թե դրսում անհամար խսիրներ են փռված, որոնց վրա ամաններով դրված են տանձը, մորին, մեղրը, և մայրը հեշտ ու հանգիստ վերցնում ու տուն է բերում:

Մայրը շատ էր սիրում Քոթոթին: Դե ո՞ր մայրը չի սիրում իր որդուն և այն էլ միունճար: Նա ամեն անգամ օրվա ուտելիքը բերում դնում էր նրա դնչի մոտ ու նոր միայն գնում աշխատանքի: Եվ մեծանում էր Քոթոթը, մեծանում, բայց մոր աչքում միշտ էլ մնում էր նույն փոքրիկը:

Մի անգամ մայրն իրեն վատ զգաց, գլուխը դրեց բարձին, որ քիչ հանգստանա:

— Քոթո՛թ ջան, ջո՛ւր,— ասաց նա տնքտնքալով:

— Չե՛մ,— պառկած տեղից մի կերպ ասաց Քոթոթը:

— Գոնե մի հատ տանձ, բերանս չորացել է:

— Չե՛մ...

Մայր արջը նոր միայն զգաց, որ Քոթոթը ալարկոտի մեկն է, և սկսեց վախենալ:

Հաջորդ օրը փորձեց հետն աշխատանքի տանել, սակայն իզուր, բան դուրս չեկավ: Փորձեց խրատել, հասկացնել, բայց ո՞ւմ հասկացներ, կա՛մ Քոթոթին ասած, կա՛մ քարին: Մի օր էլ աշխատանքից վերադարձավ և ի՞նչ տեսավ: Քոթոթն ընկել էր տան անկյուններր, ծմռան ամբողջ պաշարը սրբել-կերել և փորը տռզած խոմփացնում էր: Մայրը գլխին տալով ամբողջ գիշեր միտք արեց, միտք և բերած մեղրն ու տանձը հետը վերցնելով՝ առավոտյան գնաց աշխատանքի:

* * *

Քոթոթը քնից զարթնեց: Նա սովորականի պես աչքերի հետ նաև բերանը բացեց, որ դնչի մոտ եղած ուտելիքը կուլ տա, բայց տեսավ ոչինչ չկա: Ստուգելու համար նորից թարթեց աչքերը, բայց էլի ոչինչ չգտավ: Նա մռթմռթալով գլուխը բարձրացրեց և փորսող տալով սկսեց ընկնել տան անկյունները: Բայց ի՞նչ կարող էր գտնել, երբ ինքն էր անցած օրը եղած-չեղածը մաքրազարդել: Տեսավ ուտելու բան չկա, նորից փռվեց գետնին: «Քնեմ մինչև մայրս բերի»— մտածեց նա ու աչքերը փակեց: Բայց՝ շատակեր Քոթոթ, դատարկ փոր, էլ քո՞ւն կտանի: Եվ աչքերը դռանը հառած՝ նա սկսեց անհամբերությամբ սպասել մորը:

* * *

Մայր արջը հաստաբուն կաղնու մոտ մի ապահով փոս փորեց, աշխատած մեղրն ու տանձը պահեց այնտեղ և դատարկ-դատարկ վերադարձավ տուն:

Քոթոթը առաջին հերթին մոր թաթերին նայեց: Բայց տեսնելով, որ ոչինչ չկա, հավաքեց ուժերը և հուսահատ գոռաց.

— Տա՛նձ...:

— Չկա՛, իմ թխլի՛կ, այսօր գործս վատ էր, լավ կլինի վաղը ինքդ դուրս գաս, գուցե մի բան գտնես,—ասաց մայրը և շուռ գալով՝ աչքերը սրբեց: Դե, և՛ ասում էր, և՛ խղճում: Բայց խղճալը օգուտ չի բերի, հարկավոր է այդպես վարվել, միմիայն այդպես, թե չէ նա կյանքում տուն չի դնի: Ա՛յ, հենց իր խղճալն ու ափսոսալը փչացրին նրան...

Հաջորդ օրը նորից մայր արջը աշխատած տանձ ու մեղրը պահեց նույն փոսում և էլի դատարկ ձեռքով տուն մտավ: Նա կարծում էր, թե Քոթոթը վերջապես տնից դուրս եկած կլինի: Բայց ի՞նչ դուրս գալ: Մոր ներս մտնելուն պես՝ նա աչքերը բացեց և հազիվհազ արտասանեց.

— Տա՜նձ:

Մոր սիրտը կտոր-կտոր եղավ: Քիչ մնաց վազեվազ մտներ անտառ ու մի բան հասցներ իր Քոթոթին: Բայց նա մի կերպ զսպեց իրեն:

— Չկա՛, որդի, այսօր էլ չկարողացա ոչինչ բերել,—արցունքի միջից ասաց նա,—լավ կլինի վաղը ինքդ դուրս գաս և գուցե մի բան ճարես:

* * *

Լուսաբացին մայր արջը նորից գնաց աշխատանքի: «Այսպես որ գնա, ես կարող է սովածությունից մեռնեմ»—վախեցած մտածեց Քոթոթը և որոշեց դուրս գնալ:

Դեռ շեմքի մոտ նա մի պահ զարմացած նայեց շուրջը: Առավոտ էր: Արևի ճառագայթներից կանաչի վրա նստած ցողը ադամանդի պես պսպղում էր: Թռչունները տեղից-տեղ թռչելով անուշ ծլվլում էին: Մեղուները բզզալով իջնում էին գույնզգույն ծաղիկներին ու նորից հեռանում: Այդ պահին Քոթոթի քթի մոտ մի Մրջյուն մեն-մենակ գլորում, տանում էր ահագին մի գունդ...



— Դու ի՞նչ ես,—հարցրեց Քոթոթը:

— Մրջյուն եմ:

— Այդ ի՞նչ ես անում:

— Աշխատում եմ:

— Իսկ տարածդ ի՞նչ է:

— Ձմռան կեր:

— Ա՛յ քեզ բան...—համարյա բարձրաձայն ասաց Քոթոթը.—ինքը գետնի երեսին չի երևում, չարչարվում, բեռ է տանում...

Երբ Մրջյունն արդեն չքացել էր աչքից, Քոթոթը նորից ագահորեն սկսեց դիտել շրջապատը: Նրան դուր եկան արևի ճառագայթները, կանաչը, անտառը: Նա ոգևորությունից ասես ուժ առավ և սկսեց կամաց-կամաց առաջ գնալ... Հանկարծ ծառի բնի մոտ ինչ-որ բան տեսավ: «Դա երևի մեծ տանձ է» —մտածեց նա և հասնելուն պես՝ «հափ» արեց: Բայց մեկ էլ աչքերը փակեց, դեմքը խոժոռեց և գոռգոռալով ետ-ետ գնաց: «Տանձը» ծակծըկել էր նրա դունչն ու լեզուն:

«Ա՛յ քեզ զարմանալի տանձ»—շուրթերը լիզելով մտածում էր վախեցած Քոթոթը:

— Այսքան տարի անտառում եմ,—ծղրտաց «Տանձը»—բայց դեռ չեմ լսել, որ արջը ոզնի ուտի:

— Ուրեմն դու ոզնի՞ ես,—աչքերը չռեց Քոթոթը,—ախր ես ոչինչ չգիտեմ, ոչինչ չեմ ճանաչում, ես ուղղակի սոված եմ, շատ սոված: Ա՛յ, թե կարող ես, օգնիր ինձ:

— Աշխատել է պետք, Քոթոթ:

— Ա՛խ, եթե իմանայի ինչպե՞ս են աշխատում:

— Ահա թե ինչ, ուրեմն դու ծույլերի թագավորն ես եղել: Որ այդպես է վերցրու կացինը: Եթե կոտրատես այս կոճղերը, դա հենց կլինի աշխատանք, իսկ ես քեզ չորացած մորի կտամ:

— Իսկ ինչպ՞ես են կոտրատում,—զարմացած հարցրեց Քոթոթը:

— Ա՛յ, այսպես, այսպես,—կոճղերից մեկը կոտրատելով՝ ասաց Ոզնին,—դե, հիմա քեզ տեսնեմ:

Քանի որ մորու անունն էր լսել, Քոթոթն իրեն հավաքեց ու տեղից ելնելով՝ կացինն առավ: Ուժից այնքան էլ չէր ընկել: Նա մոտեցավ կոճղին, փնչփնչալով բարձրացրեց կացինը և թը՛մփ՝ հենց իր թաթին: Դեռ լավ էր, որ կացինը սխալմամբ հակառակ կողմից էր բռնել, թե չէ թա՞թ կմնար:

Ոզնին ոչ այն է ծիծաղեր, ոչ այն է խղճար: Երբ արջուկը գործը վերջացրեց, Ոզնին նրան մի աման չորացրած մորի տվեց: Քոթոթը թաթով քթինքը մաքրեց և մորին կուլ տալով հեռացավ:

Գնում էր անտառով: Հանկարծ մեղրահոտ ընկավ քիթը: Կանգ առավ, դես նայեց, դեն նայեց, ու մեկ էլ բերանը ինքն իրեն բացվեց: Չորացած ծառի փչակից մեղր էր ծորում, իսկական մեղր: Քոթոթին ուրիշ ի՞նչ էր պետք: Նա ուրախ-ուրախ մոտեցավ և սկսեց ախորժակով լիզել ծառաբնին քսված մեղրը: Շուտով մեղրի հետքը անգամ չը-



մնաց։ «Ո՜ւխ, ինչ լավն էր, ինչ համեղ, իսկը մորս բերածից»—մտքում ասաց նա և այս անգամ էլ հետևի ոտներին կանգնելով՝ թաթը պարզեց դեպի փչակը։ Բայց հենց նույն պահին փչակի պահակներից մեկը բզզալով իջավ ու տեղնուտեղը խայթեց նրա դունչը։ Քոթոթը սարսափած ետ-ետ գնաց և դունչը բռնած սկսեց աղեկտուր գոռգոռալ։ Հենց այդ ժամանակ մի ուրիշ մեղու մոտեցավ և նրա ականջին բզզաց.

— Այդ լինի քեզ խրատ, որ մեկ էլ թաթդ ուրիշի փչակը չկոխես։

— Դու ի՞նչ ես։

— Վա՛հ, բա չես տեսնու՞մ։

— Դե ես ոչինչ չեմ ճանաչում, ոչինչ չգիտեմ։

— Ես Մեղուն եմ. մեղրը որ կա, այդ ես եմ պատրաստում։

Արջն, իհարկե, չհավատաց։ «Մի դրան տեսեք, տանձի կորիզի չափ չկա, մեղր է պատրաստում»—մտքում ասաց նա, ապա դիմեց մեղվին.

— Դե լավ, մի՛ փչիր։ Դու ինչպե՞ս կարող ես մեղր պատրաստել։

— Ես ամբողջ օրը անդադրում աշխատում եմ, ծաղիկների ամենաքաղցր հյութը տուն եմ բերում և նրանից պատրաստում եմ քո ամենասիրած բանը։

— Իսկ չի լինի՞, որ մի՛ քիչ տաս ուտեմ, ես սոված եմ։

— Ինչու՞ չէ,—ասաց Մեղուն,—աշխատիր, կըստանաս։

— Կաշխատեմ, ես աշխատել գիտեմ,—վրա տըվեց Քոթոթը և տեղից բարձրացավ։

— Ա՛յ, տեսնու՞մ ես, այս փչակում այլևս տեղ չկա, փորիր մյուս չորացած ծառի բունը և մի նոր փչակ պատրաստիր մեղրի համար։

— Աչքի՛ս վրա,—ասաց Քոթոթը և կացինն առած՝ թըը՜խկ, հա՛ թըը՜խկ...— սկսեց աշխատել։

Երբ արդեն փչակը պատրաստ էր, Մեղուն մի մեծ աման մեղր լցրեց ու դրեց Քոթոթի առաջ։ Քոթոթը կերավ և ճամփան շարունակեց։

Հանկարծ կաղնու ծառերից մեկի վրա մի զարմանալի կենդանի տեսավ։ Նա մուգ դեղնավուն մեջք ուներ, ճերմակավուն փոր, փոքրիկ գլուխ, մանրիկ ոտներ։ Գեղեցիկ պոչը շալակած՝ մերթ ցատկում էր դեպի ծառի տակ դրված պարկը և մերթ էլ փչակը։

— Դու ի՞նչ ես,—երկար-բարակ նայելուց հետո, վերջապես հարցրեց Քոթոթը։

— Հը՜մ, հարբած հո չե՞ս, չե՞ս տեսնում, որ ես Սկյուռ եմ։

— Սկյո՞ւռ։

— Իսկական։

— Իսկ այդ ի՞նչ ես անում։

— Ինչ եմ անում, այդպես էլ հա՞րց, աշխատում եմ, ձմռան պաշար եմ տեղավորում։

«Ես սովից քիչ է մնում ուշաթափվեմ, իսկ սըրանք ձմռան պաշա՛ր հա ձմռան պաշար»—ինքնիրեն ասաց Քոթոթը և ապա դարձավ Սկյուռին.

— Դո՛ւ, օրինակ, չե՞ս ասի, թե ինչպես անեմ, որ կշտանամ։

Զարմանքից սկյուռի պոչը փշաքաղվեց։

— Ո՞նց թե,—ասաց նա,—պիտի աշխատես, Քոթո՛թ, առանց աշխատանքի փոր չի կշտանա։



Նկ. ՍՏԵԼԼԱ ԱՐԻՍՏԱԿԵՍՅԱՆԻ

Այդ պահին հանկարծ ծառից մի տանձ պոկվեց ու թըը՛մփ՝ ուղիղ Քոթոթի առաջ։ Քոթոթը ցած նայեց։ Ուրախությունից նրա աչքերը շաղվեցին։ Այո՛, դա իսկական տանձ էր՝ հասած ու ոսկեթշիկ։ Եվ նա առանց կասկածելու իսկույն վրա պրծավ ու տանձը կուլ տվեց։ Ո՜ւխ, ինչ լավն էր, ինչ համեղ, իսկը մայրիկի բերածից։ Եվ նոր տանձի հույսով, Քոթոթը նայեց վեր։

— Ամեն անգամ ծառից տանձ չի ընկնի, որ դու հեշտությամբ կուլ տաս,—ասաց Սկյուռը,—եթե բարձրանաս ու տանձերը ցած թափես, իսկույն ևեթ երկու պարկ տանձ կստանաս։

«Երկու պա՞րկ»—ուրախացավ Քոթոթը, բայց դեռ լավ չէր հասկացել, թե իր անելիքը որն է։

*Սկյուռը մի քանի անգամ բարձրացավ ծառն ու իջավ, որ Քոթոթը սովորի: Շուտով ծառերի տանձը թափված էր գետնին:*

*Քոթոթը երկու պարկ տանձ ստացավ, մեկը տեղնուտեղը կերավ, իսկ մյուսը ուսին դրած բռնեց տան ճանապարհը: Քայլում էր նա արագ-արագ և ուրախությունից երգում:*

*Մայր արջը աշխատած մեղրն ու տանձը առաջվա պես պահեց կաղնու բնի մոտ ու վերադարձավ տուն: Բայց կյանքում առաջին անգամ տեսավ, որ Քոթոթը տանը չի: Մոր համար դա անսովոր էր: Նա մի պահ քարացավ դռան մոտ: Նրան թվաց, թե տունն ամբողջապես դատարկ է, թե այլևս չի տեսնելու իր թխլիկին, իր սիրունիկին... Եվ նա դուրս եկավ տնից: Դես նայեց, դեն նայեց ու մեկ էլ ի՞նչ տեսավ՝ հրեն Քոթոթը, պարկը ուսին գալիս է: Սկզբում աչքերին չհավատաց, բայց երբ Քոթոթը կանգնեց դեմ-դիմաց, քիչ մնաց ուրախությունից ուշաթափվեր: Ինչպե՞ս չուրախանար: Ախր դա հենց իր թխլիկն էր, որին ոչ միայն փորձանք չէր պատահել, այլև նա այժմ քայլում էր, ժպտում և դեռ ուսին էլ ինչ-որ պարկ ուներ:*

*Մայրը կարոտով փաթաթվեց նրան և սկսեց ագահորեն համբուրել:*

*— Մայրի՛կ, այնքա՜ն բան եմ տեսել, այնքա՜ն բան,—ասում էր Քոթոթը,—ես հիմա գիտեմ աշխատել, գիտեմ, թե որտեղից է մեղրը, տանձը...*

*Ու այսպես, պատմում էր նա իր գլխով անցածը:*

*— Բա որ ասում էի աշխատել է պետք, չէիր լսում, որդի՛: Ես արդեն ծերացել եմ, մեն-մենակ չեմ հասցնում, ինձ օգնել է պետք:*

*— Ես կբերեմ, ամեն ինչ կբերեմ,—բացականչեց Քոթոթը,—ես հիմա լավ եմ ճանաչում անտառը:*




*ՀԱՆՐԻ ԶԱՐՅԱՆ*

Մի գիշեր տանը բոլորն արդեն քնել էին: Մի շատ հետաքրքիր գիրք էի կարդում՝ շների մասին. Ջեկ Լոնդոնի «Սպիտակ ժանիքը»: Հասել էի ամենահետաքրքիր տեղը: Բուլդոկը բռնել էր խեղճ Սպիտակ ժանիքի կոկորդից ու բաց չէր թողնում: Ամբողջովին ուշադրություն դարձած կլանում էի գրքի տողերը: Ի՞նչ կլինի հետո... Հանկարծ միջանցքից լսեցի շան աղեկտուր վնգստոց: Մի պահ ինձ թվաց՝ Սպիտակ ժանիքի ձայնն եմ լսում, բայց հետո սթափվեցի, վազեցի դեպի դուռը: Դռան շեմքին մի փոքրիկ, սիրուն շնիկ էր կծկվել ու ցրտից դողում էր: Ինձ տեսավ թե չէ, սկսեց պոչը շարժել, ուզում էր ներս մտնել, բայց երևի չէր համարձակվում: Շատ ուրախացա: Ա՛յ քեզ բան, շունն իր ոտքով էր եկել ինձ մոտ: Գրկեցի շնիկին, տարա սենյակս: Հետո գնացի խոհանոց, մի քիչ կաթ լցրեցի ափսեի մեջ, մի կտոր հաց փշրեցի վրան ու բերեցի դրեցի շնիկիս առաջ: Ծնիկը դադարեց վնգստալ, պոչը շարժեց ու սկսեց լափել համեղ բրդոշը: Այնքան սիրունի՜կն էր, այնքան փոքրիկ պոչի՜կ ուներ: Գույնը սև էր, իսկ դնչիկն ու թաթերի ծայրերը սպիտակ էին:

— Գնդլի՛կ ջան, սոված ես, հա՞,—ասացի ես:

— Հա՛ֆ, հա՛ֆ,—հաչեց նա և շարունակեց լափել համեղ բրդոշը:

Երբ կերավ վերջացրեց, նորից շարժեց պոչը, սեղմվեց ինձ ու նորից հաչեց:

— Կուզե՞ս միասին ապրենք, Գնդլի՛կ ջան,—ասացի ես իմ նոր բարեկամին:

— Հա՛ֆ, հա՛ֆ,—համաձայնվեց նա:

Այդպես էլ շնիկի անունը մնաց Գնդլիկ:

Ախր մայրիկս շուն չի սիրում, բա ինչպե՞ս անենք:

Ծնիկը կարծես հասկացավ ինձ ու սկսեց տխուր վնգստալ:

Ես իմ փոքրիկ նոր բարեկամի համար մի փափուկ շոր փռեցի հատակին ու մտա անկողին: Բայց նա կամացուկ վնգստում էր: Ստիպված վերցրեցի նրան հատակից, դրեցի ծոցս, մի քիչ շոյեցի սիրուն դնչիկն ու ասացի.

— Մի՛ մտածիր, Գնդլի՛կ ջան, մայրիկը քեզ դուրս չի անի: Քնի՛ր:

Ծնիկը երևի հանգստացավ իմ խոստումից, դադարեց վնգստալ, ու մի քիչ հետո մենք անուշանուշ քնեցինք:

Առավոտյան արթնացա: Շունը՝ դնչիկը ձեռքիս հենած, հանգիստ քնել էր: Շտապ վեր կացա, հագնըվեցի, շնիկի համար էլ ուտելիք բերեցի խոհանոցից ու վազեցի դպրոց: Երբ դասերից հետո եկա տուն, Գնդլիկը չկար: Մայրս նրան դուրս էր արել: Վրաս էլ սաստիկ բարկացավ: Ես շատ ցավեցի ու



Նկ. ՎԱԶԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

լաց եղա։ Վազեցի բակ, հարցուփորձ արի երեխաներին, բայց ոչ ոք չէր տեսել իմ շնիկին։ Գնդլիկը չկար ու չկար։

Այդ օրը, ճաշից հետո մայրիկն ու հայրիկը գնացին տատիկենց տուն։ Ես ու փոքրիկ եղբայրս էլ՝ Աշոտիկը, տանը նստած՝ շների մասին էինք խոսում։

— Ինչու՞ մայրիկը շուն չի սիրում,—ասաց Աշոտիկը։

— Որովհետև նա չգիտի, որ շունը ամենահավատարիմ կենդանին է,—ասացի ես։

— Գնդլիկը երևի սոված է ու մրսում է,—ասաց Աշոտիկը։

— Երևի,—հառաչեցի ես։

Այսպես, զրուցում էինք ես ու Աշոտիկը, մեկ էլ միջանցքից լսեցինք մայրիկի գոռոցը։ Վազեցինք դուռը բաց արինք և ի՞նչ. նորից Գնդլիկը դռան մոտ կծկված վնգստում էր։ Մայրս երևի մթության մեջ տրորել էր շնիկի պոչը, սա էլ ցավից վնգստացել էր ու մորս վախեցրել։

— Այս շնիկը ձեռ չի քաշի մեզանից, ավելի լավ է վերցնենք պահենք,—ասաց հայրիկը։

— Հա՛, հա՛, պահենք, պահենք,—ուրախացանք ես ու Աշոտիկը։

— Սա շատ քաջ շնիկ է երևում, կմեծանա, տան պահապանը կդառնա,—ավելացրեց հայրիկը։

— Հա՛ֆ, հա՛ֆ,—հայրիկի խոսքը հաստատեց Գնդլիկը։

Այնքա՜ն փոքրի՜կն էր, այնքա՜ն սիրունի՜կն էր, այնքա՜ն մե՜ղք էր շնիկը, ցրտից դողում էր։ Մայրիկի սիրտն էլ կարծես փափկեց։

— Դե սա ի՞նչ է, որ տուն պահպանի,—նահանջեց մայրս ու վերջապես ժպտաց։ Իսկ մենք մեր շնիկի հետ ուրախ-ուրախ մտանք տուն։

Ես ու Աշոտիկը կերակրում էինք մեր նոր բարեկամին, հետո խաղում ու վարժեցնում։ Գնդլիկը շատ խելացի շնիկ էր, իսկույն յուրացնում էր մեր տված դասերը ու իրեն շատ լավ էր զգում մեզ հետ։ Մեր երես առած կատուն նախանձից տրաքվում էր, որ մենք շանն ավելի շատ ենք սիրում։ Թաքուն մոտենում էր, ճանկռտում շնիկի դնչիկը և ֆշշացնելով փախչում։ Իսկ մայրիկը չէր թողնում, որ պատժեինք փիսիկին։ Մայրիկն ընդհանրապես կատու չի սիրում, բայց փիսիկին շատ էր երես տալիս, որովհետև փիսիկը մուկ էր բռնում։

— Ոչի՜նչ, Գնդլի՛կ ջան, շուտով կմեծանաս, վրեժդ կլուծես,—մխիթարում էինք մեր շնիկին ես ու Աշոտիկը, իսկ նա պոչը թափահարում էր ու ցավը մոռացած նորից խաղում մեզ հետ։

Օրեցօր մեծանում էր մեր շնիկը։ Հիմա, երբ կատուն փորձում էր ճանկռել՝ նա ինքն էլ էր հարձակման անցնում։ Մայրիկի ներկայությամբ Գընդլիկը երբեք չէր հաչում. մայրիկը բարկանում էր։ Գնդլիկը շատ էր ուզում արժանանալ մայրիկիս ուշադրությանը, բայց առայժմ հաջողություն չուներ։

Մի գիշեր էլ, երբ բոլորս խորը քնած էինք, հանկարծ Գնդլիկը սկսեց կատաղի հաչել։ Արթնացանք, վազեցինք միջանցք։ Հայրիկը բաց արեց միջանցքի դուռը, և մեր քաջ շնիկն իրեն դուրս նետեց։ Պարզվեց, որ մի հարբած մարդ շփոթել է իր բարեկամի հասցեն և աշխատում է դուռը բացել։ Գնդլիկն իր

պարտքն էր համարել, անմիջապես դիմել պաշտպանության, գործի դնելով իր՝ սուր, ականջ ծակող հաչոցը։

— Ուռա՜, կեցցե՛ մեր Գնդլիկը,—գլուխկոնծի տվինք ես ու Աշոտիկը.—բա որ ասում էինք քաջն է։

Այդ օրվանից մայրիկը մեզանից թաքուն ուտելիք էր տալիս շնիկին, և շունն իրեն երջանիկ էր զգում։

Շատ երես առածն էր մեր կատուն։ Հաճախ թաքուն հարձակվում էր թաղի շների վրա, ճանկռում նրանց ու փախչում։

Մի անգամ էլ մի քանի շուն միասին հարձակվեցին մեր կատվի վրա։ Կատուն տեսավ, որ փախչելու ճար չկա, բարձրացավ ծառը։ Շները շատ էին բարկացած նրա վրա և ծառից չէին հեռանում։ Կատուն էլ վախից փշաքաղվել և օգնություն էր կանչում։

— Մյաու՜, մյաու՜...

Գնդլիկը պատշգամբից լսեց փիսիկի աղեկտուր մլավոցը ու հասավ նրան օգնության։ Նա ավելի փոքր էր, քան ծառի տակ հավաքված շները, բայց ընկերոջը ինչպե՞ս թողներ վտանգի մեջ։ Հուսահատ, կատաղի հաչոցով վրա նետվեց։ Շները մի պահ շփոթվեցին, բայց տեսնելով, որ իրենց հակառակորդը ընդամենը փոքրիկ մի շնիկ է, ընկան նրա հետևից ու մի լավ գզեցին նրան։ Կատուն էլ առիթից օգտվեց առանց ուշադրություն դարձնելու, թե ի՞նչ վիճակի մեջ է իր պաշտպանը, ծլկեց տուն։

Խոհանոցում Գնդլիկը բարկացած հաչեց կատվի վրա.

— Հա՛ֆ, հա՛ֆ՝ «Ինչքդ չարություն ես անում և ինձ գցում կրակի մեջ»։

— Մյաու՜, մյաո՜ւ՝ «Էլ չեմ անի»—մլավեց կատուն և իր մեղքը քավելու համար գնաց մուկ բռնելու։

Այդ օրը նա առաջին անգամ մուկ սպանեց։

Հիմա Գնդլիկը մեծացել, ուժեղ, խելացի շուն է դարձել։ Արդեն մեկ տարեկան է։ Պահպանում է տունը։ Հսկում է, որ կատուն միս չթռցնի կամ էլ մայրիկի սիրած ծաղիկները չփչացնի։ Խաղում է մեզ հետ և ամեն օր մի նոր բան սովորում։ Մեկ-մեկ էլ մուկ է բռնում կատվի փոխարեն։

Բակի բոլոր չարաճճի շներն ու երեխաները վախենում են Գնդլիկից ու նրա ներկայությամբ իրենց կարգին են պահում, որովհետև Գնդլիկը կռվարարներին չի կարող տանել։ Հիմա մայրիկս շատ է սիրում Գնդլիկին և մսի ամենահամեղ կտորները նրան է տալիս։ Իսկ երբ մենք չարչարում ենք նրան՝ պոչից քաշում կամ դնչին խփում, մայրիկը բարկանում է։

— Մի՛ տանջեք շանը, չարաճճի՛ անպիտաններ...

Գնդլիկը՝ հա՛ֆ, հա՛ֆ,—հաչում է մեզ վրա. «Մայրիկին չի կարելի բարկացնել»—կարծես ասում է նա։

Իսկ ես ու Աշոտիկը թաքուն իրար աչքով ենք անում և ուրախացած՝ գլուխկոնծի տալիս։

## ԱՐՓԱ ԳԵՏԸ

*ՑԱԿԱՆ ՇՈՂԵՆՑ*

*Գեղեցիկ է մեր գետը Ջերմուկի—*
*Արփան զմրուխտի ձորերում արար,*
*Ուր ոռոգում է արտեր ու այգի,*
*Հասնում Արաքսի ջրերին վարար։*

*Նա սնում է նուռ, դեղձ, տանձ ու ծիրան,*
*Խաղողը սաթի նեկտարով պատում,*
*Որ ցնծա տոնը բերքի, լիության*
*Մեր Սովետական մայր Հայաստանում։*

*Լեռների գրկից չքնաղ Ջերմուկի*
*Բյուրեղ ալիքով Արփան է հոսում,—*
*Ափերին նրա գորգեր են ծաղկի,*
*Հավքերն են գարնան մեղեդին հյուսում։*

*Գետը մաքուր է՝ արևը գրկած,*
*Ցոլքեր սփռելով հեռուն շտապում,—*
*Երբ ջրվեժի է փոխվում սրընթաց,*
*Ծիածանների ժանյակ է կապում։*

*Ձկներն են լողում իր ալիքներում,*
*Խայտում ու պարում ջրերում արծաթ.*
*Անմոռուկները կանաչ եզերքում՝*
*Ժպտում են քնքուշ հովիտում ազատ.*



# ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԻ ԼԵԶՎՈՎ

Մեղմ քամին մանր կնճռներ էր առաջացնում լճի երեսին։ Լիճը գոտեպատող լեռնաշղթաների գագաթները մխրճվել էին ամպերի քուլաների մեջ։ Ջրից ազատված տարածությունը սպիտակ ժապավենի նման գրկել էր լճի պարանոցը։

Հենց այս սպիտակ տարածության վրա մարդիկ փոքր խմբերի բաժանված՝ պեղում էին դարավոր հուշարձանները։

Սովետական հնագետների հայտնաբերած այդ հուշարձանները, որոնք ավելի քան երեք հազար տարի թաքնված են եղել Սևանի ջրերի տակ, նոր տեղեկություններ են տալիս մեր երկրի հեռավոր անցյալի մասին։

Ամենից առաջ պարզվեց, որ այստեղ ապրած ցեղախմբերի ներսում գոյություն է ունեցել ունևորների և չունևորների խմբավորումներ։ Այս փաստը հաստատվում է պեղված ավելի քան հարյուր դամբարաններից գտնված հարուստ նյութերով։ Հասարակության ունեզուրկ անդամներին պատկանող դամբարանները փոքր են, իրերով աղքատ։ Այս դամբարաններում հանդիպում են 3—5 կավե ամաններ և մանր եղջերավոր կենդանիների գանգեր, ննջեցյալները դրված են հատուկ պատրաստված քառոտանի փայտե պատգարակների տակ։

Հակառակ սրանց, ունևորներին պատկանող դամբարանները շատ մեծ են, ունեն մինչև ութ մետր երկարություն, 2—5 մետր լայնություն և 3 մետր խորություն։ Այս դամբարաններում կան երկու և չորս անիվներ ունեցող [illegible] սայլեր, որոնց մեծ մասը ունի կամարաձև ծածկ, կամ տաշեղներից պատրաստված ցանցաձև կողեր։ Առջևից կամ հետևի կողմից դրված են քանդակազարդ տախտակներ։ Մարդկանց կմախքները գտնվում են սայլերի վրա։



Ցեղերի առաջնորդների դամբարաններում բացի սայլերից հանդիպում են նաև իսկական մարտակառքեր, որոնց վրա կարող են տեղավորվել երկու ռազմիկ։ Մարտակառքերին լծված են եղել երկուական ձի։ Այս դամբարաններում գտնված են հարյուրավոր կավե ամաններ, որոնցից զգալի մասը զարդարված է սև, սպիտակ և կարմիր ներկերով, մի երևույթ, որին հանդիպում ենք առաջին անգամ Լճաշենում։

Մեծ հաճույքով են դիտվում 20 17-րդ դարին (մ. թ. ա) պատկանող ասեղնազարդ կերամիկայի օրինակները, կրակի պաշտամունքի և կենդանիների զոհաբերության նվիրված կավե իրերը։

Ուրույն կենցաղ ու սովորույթներ են ունեցել Լճաշենի բնիկները. նրանք սիրել են զարդարվել և ստեղծել են զարդարանքի ավելի քան 50 տեսակ։ Նրանց բրդյա հագուստները, պարանոցները, գլխարկները զարդարված են եղել մեծ ու փոքր բոժոժներով, ոսկեզույն կոճակներով, թանկագին քարերից պատրաստված ուլունքներով։ Դեռ ավելին՝ նրանք կերտել են տեղական (Զոդի) ոսկուց ավելի քան 25 տեսակ զարդեր, այդ թվում նաև ոսկե գոտի (որպես անբասիրության սիմվոլ)։

Լճաշենի կուլտուրան ստեղծողները խնամքով և մեծ հոգատարությամբ կերտել են այն ժամանակի զենքերի ահարկու տեսակներ՝ բրոնզե գուրզեր, դաշույններ, սրեր, նետասլաքներ և տեգերի տասնյակ տեսակներ։ Գտնված են մարտա-



կան կացինների բազմազան տեսակներ, որոնցով զինվել են ցեղի անդամները, արյունալի պայքարի մեջ մտել հակառակորդների հետ, պաշտպանել իրենց ցեղային միության պատիվն ու ունեցվածքը, իրենց երեխաներին, կանանց ու ծերերին։ Այստեղ գործածության մեջ է եղել նաև լանջապանակը, որը պաշտպանել է կուրծքը նետասլաքներից և նիզակի ու տեգերի հարվածներից։ Դեռ ավելին, տեղաբնիկները մարտի մեջ են նետել մարտակառքերը, որոնք կատարել են ժամանակակից տանկերի դերը։

Հետաքրքրական է, որ Սովետական Միությունում բրոնզի դարաշրջանին պատկանող մարտակառքեր մինչև այժմ չեն հայտնաբերված։

Թող չկարծվի, թե Լճաշենի տեղաբնիկ ցեղերը միայն ընդունակ են եղել կռվելու։ Նրանք ունեցել են նաև իրենց կուլտուրան ու արվեստը։ Մինչև այժմ էլ, թեև անցել է 3000—4000 տարի, անհնար է առանց հիացմունքի դիտել կավե ամանները, նրանց վրայի զարդերը, կենցաղային իրերը և բրոնզե արձանները։ Դրանք ձուլված են մեծ խնամքով և ժամանակի բարձր արվեստով։ Դիտեցեք մրրկահավ հիշեցնող թռչունների արձանները, ուշադրություն դարձրեք թռիչքի պատրաստվող նրանց թևերին, տափակ ու երկար պոչերին, հրապուրիչ կտուցներին, և դուք կհիանաք։

Ահա և առյուծների արձանիկները՝ կիսաբաց երախներով, ոստյունի պատրաստ դիրքով։ Որքա՜ն անմեղություն և նազանք ունի երկար պարանոցը մեկնած, սրած ականջներով եղջերուի բրոնզե արձանը։ Նրա բարակ, ճկուն ու երկար ոտքերը կարծես պատրաստ են վազքի։

Եղջերուն արագավազության սիմվոլ է և հավանաբար այն եղել է ցեղերից մեկի պաշտամունքը։ Լավ են պատրաստված սագերի, բադերի, քարայծերի արձանները։

Մեծ ճիգ ու ջանք է թափել բրոնզից ցուլերի արձաններ ձուլողը։ Նա չի խնայել ոչ ժամանակ և ոչ էլ շնորհք։ Ձեր աչքերի առաջ է սառը մետաղից ձուլված անկենդան արձանը, բայց այն ներշնչված է կենդանի էակի տաք շնչով և թվում է, որ պատրաստվում է իր հզոր բաշով գետին տապալել նրան, ով կկանգնի իր ճանապարհին։



Մեծ վարպետությամբ են քանդակված նաև դիակառքերի փայտերը։ Զարգացման բարձր աստիճանի վրա է գտնվել կավագործությունը, շահագործվել են տեղական պղնձի և ոսկու հանքերը, կերտվել են բազմատեսակ առարկաներ։

Ուսումնասիրությամբ հաստատված է, որ Լճաշենի մշակույթը առաջացել է շուրջ 1300 տարվա ընթացքում։ Այստեղ բնակություն է հաստատվել ավելի քան 4000 տարի առաջ, և տեղաբնիկների սերունդները մեկը մյուսին փոխարինելով՝ դարերի ընթացքում աստիճանաբար զարգացրել են իրենց սեփական կուլտուրան, բարձրացրել տնտեսությունը։ Նրանց զբաղմունքի գլխավոր բնագավառը եղել է անասնապահությունը և երկրագործությունը, իսկ ձկնորսությունը և որսորդությունը ճյուղեր են եղել տնտեսության մեջ։

Այս կուլտուրան ստեղծող ցեղախմբերը ակտիվ շփումների մեջ են գտնվել հարևան և հեռավոր երկրների հետ, նրանք ազդել են դրսի կուլտուրայի վրա և ազդվել նրանցից, ապրանքափոխանակման մեջ են եղել նույնիսկ Հնդկաստանի հետ, այնտեղից բերել են եզներ և փոխարենը ուղարկել իրենց արտադրանքի նմուշներից։

Հ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ

# Ութերորդ հրաշալիքը



Հին աշխարհում յոթ հրաշալիքներ էին կոչվում ճարտարապետության և քանդակագործության յոթը կոթող: Դրանք էին՝ Ալեքսանդրիայի փարոսը, Քեոփսի բուրգը, Հռոդոսի արձանը, Մավզոլ թագավորի դամբարանը Հալիկառնասում, Զևսի արձանը Օլիմպիոսում, Արտեմիդայի տաճարը Էֆեսում և Բաբելոնի առկախյալ այգիները:

Հետագայում «Յոթ հրաշալիքներ» արտահայտությունը պատմական հուշարձանների մեծության և արտասովոր գեղեցկության չափանիշ դարձավ:

Ժամանակի ընթացքում գործածական դարձավ նաև «Ութերորդ հրաշալիք» պատկերավոր արտահայտությունը, որը գործածվում է նույն նշանակությամբ, ինչ «Յոթ հրաշալիք» արտահայտությունը: Այս դեպքում նկատի են ունենում Չինական Մեծ պարիսպը, Նանկինի հախճապակյա աշտարակը, Պիզայի թեք աշտարակը, Ագրայի Թաջ Մահալը և այլն:

Ճարտարապետական հինավուրց կոթողների մեջ յուրահատուկ տեղ է գրավում Չինական Մեծ պարիսպը: Այդ վիթխարի շինարարությունը, իր մեծությամբ չգերազանցված պաշտպանողական շինություն է:

Պարիսպը կառուցվել է ավելի քան երկու հազար տարի առաջ: Տափաստանային քոչվոր ու թափառական ցեղերը հաճախակի հարձակումներով խանգարում էին չին ժողովրդի խաղաղ ու ստեղծարար աշխատանքը: Եվ այդ հարձակումներից պաշտպանվելու համար կառուցվեց հռչակավոր պարիսպը:

Չինական Մեծ պարիսպն սկզբնավորվում է Դեղին ծովի Լյաոդունյան ծոցի ափին գտնվող Շանխայգուան քաղաքից և շրջանցելով Պեկինի հարթությունը, ձգվում է Չինաստանի ամբողջ հյուսիսով և հասնում Ցզյայուիգուան լեռը՝ Գանսու նահանգի արևմտյան մասում: Նրա երկարությունը մինչև այսօր դեռ ստույգ չի որոշված: Ուղիղ գծով



Նկ. ԿԱՐԼԵՆ ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆԻ

այն հավասար է 1800 կիլոմետրի: Բայց քանի որ Մեծ պարիսպը անցնում է բազմաթիվ լեռնաշղթաներով, իջնում ու բարձրանում է զառիթափ լանջերով, ապա նրա փաստացի երկարությունը հաշվվում է մոտ 4000 կիլոմետր:

Պարսպի բարձրությունը հասնում է վեց մետր 60 սանտիմետրի, լայնությունը հիմքում վեց ու կես, իսկ վերևի մասում հինգ ու կես մետր է: Պարսպի վրայով ժամանակին բանակներ են անցել: Պարսպին կից կան բազմաթիվ օժանդակ շինություններ: Յուրաքանչյուր 120 մետրից հետո կանգնեցված են հսկելու աշտարակներ, որտեղ պահակ զինվորներ էին բնակվում: Մեկը մյուսին հաղորդելով, նրանք տեղ էին հասցնում մայրաքաղաքից եկած լուրերն ու հրամանները: Բացի այդ յուրաքանչյուր տասը կիլոմետրից հետո կառուցված են ազդանշանային դիտանոցներ, որտեղ տագնապի դեպքում խարույկներ էին վառում: Հարևան պահակատեղերը ընդունելով ազդանշանը, նույնպես խարույկ էին վառում և միմյանց օգնության հասնում:

Այնտեղ, ուր Մեծ պարիսպը կտրում է խոշոր ճանապարհները, կառուցված են ուղեփակոցներ, որոնք իրենց հերթին բերդաքաղաքներ էին: Այդ տեղերում Մեծ պարիսպն ունի հոյակապ դարպասներ, որոնք կառուցված են չինական գեղեցիկ ոճով: Գլխավոր պարսպին զուգահեռ գնում է, այսպես կոչված՝ արտաքին ճյուղը, որը զիջում է գլխավորին, թե՛ իր բարձրությամբ և թե՛ իր ամրությամբ:

Պարսպի հիմքը դրվել է 221 թ. (մ. թ. ա.):

Հետագայում այն մի քանի անգամ վերանորոգվել, ամրացվել և լրացվել է:

Ցին Շի Խուան կայսրի հրամանով Չինաստանի բոլոր ճարտարապետները և վարպետները պետք է տասը տարում ավարտեին այդ հսկա շինարարությունը: Միլիոնավոր մարդիկ թողեցին իրենց հայրենի վայրերը և մեկնեցին դեպի հյուսիսային

սահմանները: Ամբողջ Չինաստանը տասը տարի շարունակ նրանց սնունդ ու շինանյութ էր մատակարարում:

Պարիսպը կառուցում էին կայծքարից և այլ քարերից, որոնք միմյանց էին կապում այնպիսի շաղախով, որ ոչ մի անցք կամ ճեղք չմնար: Աներևակայելի դժվարությունների հետ է կապված եղել շինանյութերի տեղափոխումը դեպի բարձր լեռներն ու անապատները: Այն ժամանակ չկային մեքենաներ և ամեն ինչ կատարվում էր մարդկանց ու անասունների միջոցով:

Այդ հսկա պարիսպը 150 միլիոն խմ. հող և 50 միլիոն խմ. քար ու աղյուս է կլանել: Պարսպի կառուցումը անսահման ծանր է նստել չին ժողովրդի վրա: Մարդիկ աշխատել են առավոտից մինչև ուշ երեկո, արևի ու քամու դեմ, սնվելով միայն խաշած բրնձով: Շատերը, չդիմանալով աշխատանքի դաժան պայմաններին, հսկիչների ծեծին, մահացել են կամ վայր ընկնելով պարսպից՝ ջախջախվել: Հինգ հարյուր հազար հոգի թաղվել են հիմքերի ու պատերի մեջ, և Ճանգ-Ճենգը իրավամբ կոչվել է «Աշխարհի ամենաերկար գերեզմանոցը»: Նրանք, ովքեր կենդանի մնացին, տուն վերադարձան ծերացած և ուժասպառ՝ գտնելով միայն իրենց չորացած պարտեզները, ամայի տները և հարազատների գերեզմանները:

Չինացիների մոտ այդ դառնություններից շատ ավանդություններ ու երգեր են մնացել:

Այդ պարսպի գոյությունը ցույց է տալիս, որ մեզանից ավելի քան 2000 տարի առաջ Չինաստանում բավական զարգացած են եղել շինարարական և մաթեմատիկական գիտությունները, տեղագրությունն ու աշխարհագրությունը:

Պարիսպը հիացմունք է պատճառել շատ ճանապարհորդների, աշխարհագրագետների, հնագետների: Ահա թե ինչ է գրում նրա մասին Տրոյա քաղաքի ավերակները հայտնաբերող հնագետ Հ. Շլիմանը. «Ես տեսել եմ վեհապանծ տեսարաններ, որ բացվել են իմ առաջ Ճավա կղզու հրաբուխների բարձունքներից, Սյեռա-Նեվադայի կատարից՝ Կալիֆորնիայում, Հիմալայներից՝ Հնդկաստանում, Կորդիլերների բարձրավանդակներից՝ Հարավային Ամերիկայում: Սակայն երբեք, ոչ մի տեղ չեմ տեսել ոչինչ, որ հնարավոր լիներ համեմատել այն հոյակապ պատկերի հետ, որը ծավալվել էր այստեղ իմ աչքերի առաջ:

Ապշած ու զմայլված, հիացմունքով լի և սքանչացած, ես չէի կարողանում ընտելանալ այդ զարմանալի տեսարանին: Չինական մեծ պարիսպը, որի մասին դեռ վաղ մանկությունից չէի կարողանում լսել առանց կենդանի հետաքրքրության զգացմունքի, այժմ փռված էր իմ առաջ՝ հարյուր անգամ ավելի հոյակապ, քան ես պատկերացնում էի, և որքան ավելի երկար էի նայում այդ անսահման կառուցվածքին, այնքան նա ինձ անդրջրհեղեղյան հսկաների ցեղի հեքիաթային կերտվածք էր թվում»:

Չինաստան այցելողները հաճախ են լինում Մեծ պարսպի մոտ, հատկապես Պեկինի հատվածում:

*ԿԱՄՍԱՐ ԱՎԵՏԻՍՅԱՆ*

*(Աշխարհագրագետ)*

# Ինչպես գրել

*ՇԱՄԻՐԱՄ ՋԱՔԱՐՅԱՆ*

Թիկնեց տղան սարի լանջին,
Ու երազեց թուղթն առած.
Նայեց, նայեց թարմ կանաչին,
Ծաղիկներին նորաբաց.
Տողն առաջին ուզեց հյուսել,
Աչքը ծաղկին երբ դիպավ,
Խոսք չգտավ. ախ, ի՞նչ ասել,
Ի՞նչ կար, ասեք, ծաղկից լավ։
«Սիրուն ծաղիկ» — գրեց տղան,
Բայց աղբյուրը ծիծաղեց,
Այնքան ուժգին, որ տղայի
Թղթի վրա ցող շաղեց։
«Անուշ աղբյուր»—գրեց տղան,
Ջալտիկ-մալտիկ մի թռչուն
Մոտիկ եկավ ու գեղգեղաց,
Տեսնես ո՞ւմն էր նա կանչում։
«Չէ՛, չի լինում,—տղան ասաց,
Տունը լավ է, խաղաղ, լուռ.
Խանգարում են ամեն կողմից՝
Ծաղիկ, թռչուն ու աղբյուր։
Լավ չէ՞ր լինի, որ նկարեմ
Մատիտներով գունավոր,
Պատկերները ես տուն տանեմ
Գույների հետ այս բոլոր...»
Բայց ոչ գրեց, ոչ նկարեց,
Երգը սրտում եկավ տուն.
Հոգնած տղան, երբ որ քնեց,
Երազ տեսավ գույնզգույն...

# Պետյան ու պապուասը

ՄԱՐԿ. ԳԻՏԼՅԱՐՍԿԻ

Պետյան տանջվում է չարաչար,
Օր ու գիշեր չունի դադար.
Արկածներ է անվերջ փնտրում
Ու ոչ մի դաս չի սովորում:
Դասը ո՞րն է, դե ի՞նչ անի,
Որ ժամանակ տղան չունի:
Սլանում է նա մերթ ոտքով
Ու մերթ փայտե ձիուն նստած,
Որ հեռավոր արշավանքով
Զարմացնի բոլոր մարդկանց:
Մերթ սավառնում է աթոռով՝
Իբրև թե «ՏՈւ» ինքնաթիռով,
Ու մերթ թասը հրթիռի տեղ
Դեպի Մարս է նետում անշեղ:
Եվ երեկ էլ դասարանում
Ուսուցչուհին դաս էր հարցնում,
Իսկ նա թե՝ ես պապուաս եմ,
Էլ ձեր լեզվով ինչպե՞ս խոսեմ...
Հենց այդ պահին դուռն են թակում
Վահ, հեքիա՞թ է սա, թե երազ...
Դասարան է հանկարծ մտնում
Բարձրահասակ մի պապուաս:
Եվ ասում է. «Երեխանե՛ր,
Ես ապրում եմ անտառում մութ.
Կյանքում երբեք չեմ սովորել,
Ինձ ճնշել են տերերն անգութ:
Հայրենիքն իմ հարուստ է շատ,
Բայց ապրում ենք խեղճ ու աղքատ.
Կախարդ Շամանն ու տերը չար
Խաբում են մեզ և թալանում.
Որ վայրի ենք, անգետ, անճար,
Մեղավոր չենք մենք այդ բանում:
Ա՛յ, որպեսզի չդառնամ գյուղ՝
Առանց որսի ու ավարի,
Պիտի կռվեմ ես աներկյուղ
Գազանների հետ անտառի:
Տեսե՛ք, կրծքիս, գլխիս որքա՞ն
Ջանգռած տեղեր, սպիներ կան.
Ուսիս վրա դեռ կան վերքեր,
Առյուծներն են մաշկս պոկել.
Անտառում կա վարար մի գետ,
Եվ այդ գետի ջրերում խոր
Կոկորդիլոս հրեշի հետ
Ահեղ կռվի մտա մի օր:
Պետյա՛, դու իմ փոքրիկ հերոս,
Կուզե՞ս, փայտե նիզակս տամ,
Եվ չկարծես, թե մեկ օրով,
Կնվիրեմ քեզ մշտական,
Միայն թե դու անտառ գնաս,
Գազաններից չվախենաս;



Սարեր, ձորեր տաս ոտնատակ,
Բերես թեկուզ մի նապաստակ...
Մի՛ զարմանա, իմ բարեկամ,
Ախր պիտի ե՛ս զարմանամ,
Որ մեծ երկրում քո հայրենի
Մնում ես դու դեռ վայրենի.
Ջուր մի՛ կոչիր քեզ պապուաս,
Տղա չես դու, այլ պատուհա՞ս...»
Պետյան իրեն վատ է զգում,
Կարմրել է գազարի պես.
Ու կրկնում է անվերջ մտքում.
«Մեղավո՞ր եմ, մեղավո՞ր ես...»
Իսկ տղաներն իրենց տեղից
Վեր են թռչում միանգամից,
Ողջունում են պապուասին,
Կարմիր վզկապ կապում վզին...

*Փոխադրեց Ս. ՄԿՐՏՉՅԱՆ*

Նկ. ՀՐԱՉԻԿ ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԻ

# Այստեղից-այնտեղից

## ՍՏՈՐՋՐՅԱ ՇՈՒՇԱՆՆԵՐ

Ծովերում և օվկիանոսներում ապրում են այնպիսի կենդանիներ, որոնք զարմանալիորեն նման են շուշանի։ Դրանց մարմնի ձևը զեղեցիկ ծաղկեփունջ է հիշեցնում։

Ծովային շուշանները շատ բազմազան են։ Կան այնպիսիները, որոնք ամբողջ կյանքն անցկացնում են միմյանց կպած վիճակում, օրորվելով բարակ ծիրանների վրա։ Ուրիշներն ընդունակ են կտրվել ցեղակիցներից և ազատ լողալ իրենց «ձեռքերի» օգնությամբ։

Ծովաշուշանը սնվում է այն մանր օրգանիզմներով, որոնք ջրի հոսանքի հետ լցվում են բերանը։

Սրանք շատ հին կենդանիներ են։ Սրանց հետքերը կարելի է տեսնել Երկրի ամենահնագույն շերտերում։

Ծովաշուշաններ կան մեր Երկրի հյուսիսային և հեռավոր արևելյան ծովերում։

## ԴՆԴԱՁԵՎ ՁՈՒԿ



Կորալի խութերում բնակվում է մի տեսակ ձուկ, որը հաճախ կատաղի մարտերի մեջ է մտնում։ Թշնամուն տեսնելիս նա դառնում է կլոր գունդ և ծածկվում սուր ասեղներով ու փշերով։ Թշնամին դիպչելով այդ գնդին, անմիջապես հետ է նահանջում։ Խաղաղ ժամանակ այս ձուկը մեծ ուժով բաց է թողնում ջուր և օդ ու նորից ընդունում է սովորական տեսք։

Այս ձուկը պատկանում է ատամնավոր ձկների ընտանիքին և յուրաքանչյուր ծնոտի վրա երկուական դուրս ընկած ատամ ունի, ասես՝ թութակի կտուց։

Մարդկանց ձեռքն ընկնելիս ատամնավոր ձուկը ծվծվում է և բաց թողնում մեծ քանակությամբ որդան կարմիր գույնի հեղուկ, որը ամուր ներկում է թուղթ, փայտ և ոսկոր։ Այս ձուկը հետաքրքիր է նաև նրանով, որ սատկելուց հետո էլ դառնում է կլոր գունդ։

## ՄԵԿ ՈՒՂՂՈՒԹՅԱՄԲ



Ալմաստը կտրում է միայն մեկ ուղղությամբ և չի կարելի երկու անգամ գծել միևնույն տեղը։ Ալմաստը հեշտությամբ է կտրում ապակի, որովհետև ապակուց ամուր է մոտ 114 հազար անգամ, երկաթից՝ 18 հազար անգամ, իսկ պողպատից՝ 3 հազար հինգհարյուր անգամ։

## ՍԱԳԵՐԸ... ՔԱՂՀԱՆԱՎՈՐ

Առանց մոլախոտերը ոչնչացնելու չի կարելի բարձր բերք ստանալ։ Բայց դրանց դեմ պայքարելը այնքան էլ հեշտ գործ չէ։ Հացազգիների մեկ բույսը տալիս է 200-300 սերմ, իսկ մոլախոտը՝ մեկ միլիոն 250 հազար, այսինքն 5—6 հազար անգամ ավելի շատ։

Ոչ հեռավոր ապագայում գիտնականները քիմիայի օգնությամբ արմատապես կլուծեն այս հարցը և գյուղատնտեսությանը կտան բավականաչափ քանակությամբ հերբիցիդներ, որոնք ոչ մի վնաս չտալով կուլտուրական բույսերին, կոչնչացնեն մոլախոտերը։



Բայց առայժմ մոլախոտերի դեմ պայքարը տարվում է ոչ թե քիմիական, այլ մեխանիկական մեթոդով։ Միջշարային տարածությունները հեշտությամբ մաքրվում են մեքենաներով ու գործիքներով։ Սակայն մշակվող բույսերին կից աճած մոլախոտերը հնարավոր է հեռացնել միայն ձեռքով։ Սա ծանր աշխատանք է և երկար ժամանակ է խլում։

Ֆրանսիական «Լյա Նաթուր» («Բնություն») ամսագիրը վերջերս գրել է այն մասին, թե ինչպես Հարավային Ամերիկայում բամբակի պլանտացիաները քաղհանելու նոր մեթոդ են մշակել, այդ գործը հանձնաբարելով... սագերին։

Բանն այն է, որ տնային սագերը շատ են սիրում կանաչ արածել, բայց տանել չեն կարողանում բամբակենու համը։

Երբ վրա է հասնում քաղհանի ժամանակը, մարդիկ դեպի բամբակի պլանտացիաների են քշում սագերի մի ամբողջ երամ։ Բկլիկ թռչունները դանդաղ քայլում են շարքերի միջով և մանրակրկիտ կերպով դուրս են քաշում բամբակենիների կողքին աճած ամեն մի բույս։

Ամսագրի պնդումով, տասը հեկտար բամբակի դաշտը մոլախոտերից մաքրելու համար բավական է այնտեղ արածացնել ընդամենը 25 սագ։ Ե՛վ սագերը կուշտ կլինեն, և՛ դաշտերը՝ մաքուր։

## ԹԹՈՒ ԳԵՏ

Այսպիսի գետ հոսում է Կոլումբիայում և կոչվում է Ռիո Վինեգրե, որ թարգմանելիս նշանակում է Քացախի գետ։ Այս գետի ջուրն այնքան թթու է, որ խմելու համար պիտանի չէ, և ոչ մի ձուկ չի ապրում այնտեղ։ Գիտնականները դա բացատրում են նրանով, որ գետը սկիզբ է առնում գործող հրաբխի մոտերից։



## ԳԱՅԼԸ ՄԻՇՏ ՉԷ, ՈՐ ԱՆՏԱՌԻ ԿՈՂՄՆ Է ՆԱՅՈՒՄ

Մի անգամ Յապոնիայի Սենդայ քաղաքի կենդանաբանական այգում զարմանալի դեպք տեղի ունեցավ։ Այցելուներից մեկը նկատեց, որ առյուծների վանդակը դատարկ է և դուռն էլ՝ բաց։



Առյուծների «փախուստի» լուրը հասավ մինչև ոստիկանություն։ Սակայն բոլոր որոնումներն իզուր անցան։ Վերջապես այգում մնացած ոստիկաններից մեկի գլխում միտք ծագեց նորից նայել վանդակը։ Եվ ո՜վ զարմանք. երկու առյուծներն էլ ննջում էին բաց վանդակի դռան մոտ։

Պարզվեց, որ աշխատակիցը մոռացել է դուռը փակել, և առյուծները դուրս են գնացել։ Բայց երբ աղմուկը դադարել է, և մարդիկ հեռացել են այգու այդ մասից, գազանները կրկին վերադարձել են իրենց սովորական տեղը։

Գերմանական մի կրկեսից Բիմբո անունով կապիկը հաճախ էր վանդակից փախչում դեպի ազատություն։ Մի անգամ նա բացակայեց նույնիսկ 15 օր, բայց կրկին վերադարձավ։

Այսպիսի դեպքեր շատ են լինում։ Սրանք ցույց են տալիս, որ ժամանակի ընթացքում գազանը ընտելանում է իր «տանը» և ապրելակերպին։ Փոխվում է ժողովրդական այն հնագույն խոսքը, թե գայլը միշտ անտառի կողմն է նայում։

## ԽՈՐՀՐԴԱՎՈՐ ԳՐՈՂԸ

Ամերիկյան մի ժուռնալ 1948 թվականին հինգ հազար դոլար խոստացավ տալ այն մարդուն, ով կհայտնաբերի գրող Տրավենի ապրելատեղը։

Բայց բոլոր որոնումներն ապարդյուն անցան։ Մինչև այսօր էլ ոչինչ հայտնի չէ մի գրողի մասին, որի ստեղծագործությունները 30 տարուց ավելի է, ինչ թարգմանվում են շատ լեզուներով և միլիոնավոր օրինակներով տարածվում ամբողջ աշխարհում։

Գրական ոչ մի տեղեկագիր չի կարող հայտնել Տրավենի ծննդյան թիվը, ծննդավայրն ու հասցեն։ Նույնիսկ նրա հրատարակիչները, թարգմանիչները, նրա վեպերի հիման վրա սցենար գրողներն ու նկարահանողները չեն կարող պատասխանել այն հարցին, թե ով է նա և որտեղ է ապրում։



Ոմանք պնդում են, որ այդ խորհրդավոր գրողը գերմանացի է և ապրում է մեքսիկական մի խուլ գյուղում, գրքերով լի մի տան մեջ։ Ուրիշներն ասում են, թե Տրավենը շվեդացի է։ Կան մարդիկ էլ, որ գտնում են, թե դա գրական կեղծանուն է, և նրա տակ թաքնված է մի կին։ Նույնիսկ կարծիք կա, թե Տրավենի անունով լույս տեսնող գրքերը գրում են մի խումբ ժուռնալիստներ։

Գուցե երբեք էլ հնարավոր չլինի պարզել իսկությունը, որովհետև այդպես է ուզում ինքը՝ Տրավենը։ «Բացի իր ստեղծագործություններից, գրողը այլ կենսագրություն չունի»,—հայտարարել է նա մի նամակում, որտեղ էլ վրդովմունքն է հայտնել իրեն որոնելու դեմ։

## ՆԻԿՈԼԱՅ ԲՈՒՐԲԱԿԻ

Երբ Ամերիկյան մաթեմատիկական ընկերության ղեկավարները Նիկոլայ Բուրբակիից դիմում ստացան իրեն ընկերության անդամ ընդունելու մասին, նրանք մերժեցին դիմումը, դա համարելով թեթևամիտ մի կատակ։

Ինչո՞ւ։ Չէ՞ որ Նիկոլայ Բուրբակին ժամանակակից մաթեմատիկայի վերաբերյալ բազմաթիվ հրաշալի գրքերի հեղինակ է, ամբողջ աշխարհը կարդում է նրա գրքերը։ 1939 թվականից նա սկսեց լույս ընծայել «Մաթեմատիկայի տարրերը» աշխատությունը, որի 20-րդ հատորն արդեն լույս է տեսել։

Պարզվում է, որ Նիկոլայ Բուրբակին գոյություն չունեցող ֆրանսիացի է՝ հորինված ազգանունով։ Այդ կեղծանվան տակ աշխատում են ֆրանսիական մի խումբ մաթեմատիկոսներ։

Ստույգ հայտնի չէ, թե ինչու նրանք ընտրել են այդպիսի անուն։

Այս կազմակերպության անդամները, որոնց թիվը կազմում է 10—20 հոգի, ամեն տարի հավաքվում են Ֆրանսիայի կուրորտային վայրերից մեկում, որպեսզի քննության առնեն իրենց աշխատության հերթական հատորի պլանը։



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*

# ԺԱՄԱՆՑ

## ԿԱՐՈ՞Ղ ԵՍ ԱՆՄԻՋԱՊԵՍ ՊԱՏԱՍԽԱՆԵԼ



Եթե 5 կատու 5 մուկ բռնեն 5-րոպեում, ապա 100 մուկը 100-րոպեում բռնելու համար քանի՞ կատու է հարկավոր:

## ՀԱՆԵԼՈՒԿ

Այն ի՞նչն է՝ գնալիս ծիծաղում է, վերադառնալիս լալիս: (Թիակ)



## ԱՐԴՅՈՔ ՃԻ՞ՇՏ ԷՐ ԴԱՏԱՎՈՐԸ

*Երկու ճանապարհորդ կանգ առնելով մի բարձր պատի շվաքի տակ՝ ուզում են նախաճաշել:*

*Առաջինը ունենում է 5 բուլկի, երկրորդը՝ 3:*

*Նախքան նախաճաշի սկսելը մոտենում է մի անծանոթ մարդ և խնդրում նրանցից՝ իրեն էլ բաժին հանել: Նրանք բուլկիները բաժանում են 3 հավասար մասերի և ամեն մարդ ուտում է իր բաժինը:*

*Անծանոթը հենց որ վերջացնում է նախաճաշը, վճարում է 8 կոպեկ և հեռանում:*

*Այն ընկերը, որը ուներ 5 բուլկի, վերցնում է 6 կոպեկ, մնացած 2 կոպեկը տալիս է ընկերոջը: Ընկերը չի համաձայնվում, նա պահանջում է առնվազը 3 կոպեկ. Նրանք երկուսով շատ են վիճաբանում, մինչև գործը հասնում է դատավորին: Դատավորը ուշադիր լսելուց հետո՝ հայտարարում է.*

*— Այն մարդը, որն ուներ 5 բուլկի, կվերցնի 7 կոպեկ, իսկ ով ուներ 3 բուլկի, նրան հասնում է 1 կոպեկ: Սա է իմ վերջնական արդար վճիռը:*

*Արդյոք ճի՞շտ էր դատավորը:*

*Առաջարկ. Վ. ՍԱՀԱԿՅԱՆԻ*


Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ





„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—39—06

ՎՖ 00042 Պատվեր 1051, Տպաքանակ՝ 8000: Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 6/VII 1961 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ Երևան, Տերյան 91:
Գինը 20 կ:







## «ԵՐԿՆԱԳՈՒՅՆ ՆԵՏԻ ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴՈՒԹՅՈՒՆԸ»

Նոր տարվա գիշեր է... Աշխարհի բոլոր մանուկները քնած են երջանիկ ու բախտավոր քնով, նրանցից ամեն մեկը կամ արդեն ստացել է իր սիրած խաղալիքները, կամ կստանա վաղ առավոտյան արթնանալիս: Թվում է, որ այդպես պետք է լինի, որովհետև բոլոր երեխաներն էլ խաղալիք ունենալու իրավունք ունեն: Բայց մի՞թե այդպես է, մի՞թե բոլոր մանուկներն էլ այդ հնարավորությունն ունեն: Ահա այդ մասին է պատմում իտալական նշանավոր գրող Ջաննի Ռոդարին իր «Երկնագույն Նետի ճանապարհորդությունը» գրքով:

Եթե մենք նույնպես ճանապարհորդենք «Երկնագույն Նետի» հետ, ապա կհանդիպենք Իտալիայում ապրող շատ երեխաների, որոնք ամբողջ տարին երազում են Նոր տարուն խաղալիք ստանալու մասին: Նրանք համոզված են, որ հեքիաթային Ֆեյան այդ գիշեր իրենց համար խաղալիքներ կբերի: Բայց առավոտյան արթնանում են, և չկա թե՛ հեքիաթային Ֆեյան, և թե՛ երազած խաղալիքը: Մեր ճանապարհորդության ժամանակ մենք կգտնենք նաև այսպիսի նամակ. «Սինյորա Ֆեյա, ես երբեք և ոչ ոքից նվեր չեմ ստացել: Իսկ վերջերս իմացա, որ դուք երեխաներին նվերներ եք բերում: Ես այս երեկո ճրագը չեմ հանգցնի, անհամբեր կսպասեմ ձեզ: Իսկ երբ դուք գաք, ես կասեմ, թե ինչպիսի խաղալիք կուզենայի ստանալ: Ես վախենում եմ, թե կքնեմ, դրա համար էլ ձեզ նամակ եմ թողնում: Շատ եմ խնդրում, սինյորա Ֆեյա, չմերժեք ինձ: Ես լավ տղա եմ, այդ մասին բոլորն են ասում, և ավելի լավ կլինեմ, եթե ինձ երջանկացնեք, թե չէ ինչի՞ համար լավ տղա լինեմ:

Ձեր Ջամպաոլո»:

Ճանապարհորդելիս մենք կծանոթանանք Ջամպաոլոյի նման շատ ու շատ երեխաների և կլսենք նրանց տխուր խոսակցությունները, բայց ի՞նչ կարիք կա պատմելու, ավելի լավ է ինքներդ ունենաք այդ գիրքը և կարդաք: «Երկնագույն Նետի ճանապարհորդությունը» գրքում դուք կգտնեք նաև ձեզ արդեն ծանոթ «Չիպոլինոյի արկածները» և «Անտեսանելի Տոնինոյի արկածները»:

## «ԲԺՇԿԻ ԶՐՈՒՅՑՆԵՐ»

Այս փոքրիկ, նկարազարդ գրքույկը պատանի ընթերցողներին կհուշի օգտակար մտքեր, և դուք կսկսեք փոխել ձեր ապրելակերպը տանը և դպրոցում:

«Բժշկի զրույցներ» խորագիրը կրող գրքի հեղինակն է բժիշկ Ռաֆայել Փարսադանյանը: Հեղինակը մատչելի լեզվով պատմում է բժշկական, հատկապես անձնական հիգիենայի մասին, որն այնքա՜ն անհրաժեշտ է ամեն մի դպրոցականի համար:

Հանրահայտ է, որ մանուկ հասակում ձեռք բերած կուլտուրան, հիգիենիկ սովորությունները դառնում են բնավորության գծեր և չեն մոռացվում ամբողջ կյանքի ընթացքում:

Ֆիզկուլտուրան և ֆիզիկական աշխատանքը կոփում են մարդու օրգանիզմը: Դրանք մարդուն դարձնում են առույգ, կենսուրախ և աշխատունակ: Իսկ Արամը դրանցից խուսափում էր և դրա համար էլ միշտ հիվանդ էր ու թույլ: Ոչ պակաս հետաքրքիր է «Ախ, այդ ձանձերը» զրույցը: Աներես ճանճերը հանգիստ չեն տալիս Սամվելին, և նա ոչնչացնում է նրանց: Չէ՞ որ նրանք իրենց մարմնի վրա տեղափոխում են դիզենտերիա, ինչպես նաև որովայնային տիֆ և այլ հիվանդություններ առաջացնող միկրոբներ:

Գրքույկում հետաքրքիր տեղեկություններ կան բուժիչ և թունավոր դեղաբույսերի, ինչպես նաև վիտամինների մասին, որոնք մեծ նշանակություն ունեն մարդու, հատկապես երեխայի օրգանիզմի համար:

Երեխաներ, կարդացեք բժիշկ Ռ. Փարսադանյանի «Բժշկի զրույցներ» գրքույկը:

*Բժիշկ ՀԱԿՈԲ ԱՌԱՔԵԼՅԱՆ*

20 Կ.

# ՆԿԱՐՈՒՄ ԵՆ ՄԱՆՈՒԿՆԵՐԸ



ԾԱՂԻԿՆԵՐ

ԿԱՐԱՊԵՏՅԱՆ ՌԱԶՄԻԿ

(Սևանի շրջան, գյուղ Ցամաքաբերդ, 1-ին դաս. աշակերտ)

ԳԱՐՈՒՆ

ՊՈՂՈՅԱՆ ՍԵՐԺԻԿ

(Աշտարակի շրջան, գյուղ Ոսկեհատ, 2-րդ դաս. աշակերտ)

